№ 35 «ՅԱՌԱՋ»-ի գրադարան № 35

Լ. ՇԻՇԿՕ

# ՆՒԱԶԱԳՈՅՆ ԾՐԱԳԻՐԸ

Թարգմանեց Մ. Սարդ

Գինն է 10 ԿՈՊ.

ԹԻՖԼԻՍ
1907

№. 35 «ՅԱՌԱՋ»Ի ԳՐԱԴԱՐԱՆ № 35

Լ. ՇԻՇԿՕ

# ՆՒԱԶԱԳՈՅՆ ԾՐԱԳԻՐԸ

Թարգմ. ռուս. Մ. Ցար.




ԹԻՖԼԻՍ
1907

# ՆՒԱԶԱԳՈՅՆ (minimum) ԾՐԱԳԻՐԸ

Սոցիալ-յեղափոխական դպրոցի նուազագոյն ծրագրի գլխաւոր զանազանութիւնը սոցիալ-դէմօկրատականից այն է, որ առաջինի պահանջները սոցիալական յարաբերութիւնների վերաբերմամբ հեռու են գնում գոյութիւն ունեցող տնտեսական կազմի սահմաններից. այնինչ սոցիալ-դէմօկրատ կուսակցութեան նուազագոյն ծրագրի պահանջները սահմանափակւում են վարձու աշխատանքի պայմանների և բանւոր դասակարգի դրութեան միայն այնպիսի բարելաւումներով, որոնք դեռ ևս բուրժուա-դէմօկրատական հասարակութեան հիմքերը չեն քանդում և կատարելապէս միատեղւում են արտադրութեան կապիտալիստական եղանակի յետագայ զարգացման հետ։

Այս ծրագրային զանազանութիւնները, որոնք նուազագոյն պահանջներին են վերաբերւում, կապ ունին սոցիալիստական շարժման զարգացման պայմանների մասին այս և այն դպրոցի ունեցած ընդհանուր հայեացքների շատ էական զանազանութիւնների հետ. իսկ սա իր հերթին կապ ունի հայեացքների աւելի մեծ արմատական զանազանութիւնների հետ այն փիլիսոփայական և տնտեսական նախադրեալների վերաբերմամբ, որոնք պիտի սոցիալիզմի գիտական հիմնաւորման հիմքում դրւեն։

Սոցիալ-դէմօկրատական ծրագրի թէօրիական հիմնաւորումը, ինչպէս յայտնի է, կապւած է տնտեսական մատերիալիզմի փիլիսոփայական սիստեմի հետ, որ իւրաքանչիւր հասարակական շարժում դիտում է, իբրև անմիջական արտացոլումն այն փոփոխութիւնների, որոնք առաջանում են տնտեսական յարաբերութիւնների մէջ երկրի արտադրական ուժերի զարգացման և արտադրութեան գործիքների տեխնիքական կատարելագործման ազդեցութեան տակ։ Այս հայեացքի համեմատ, կապիտալիստական հասարակութեան ծոցում սոցիալիստական շարժումը ամբողջապէս պայմանաւորւում է ինչպէս իր սկզբնական ծագման, նոյնպէս և իր զարգացման բոլոր յետագայ շրջաններում, նոյն այդ հասարակութեան ներսում կա-

տարուած արդիւնաբերական շարժմամբ, այսինքն՝ կապիտալիստական արտադրութեան եղանակի անընդհատ զարգացմամբ։

«Մենք մեկնում ենք այն հիմնական դրութիւնից,—ասում Կաուցկին,—որ ժամանակակից արդիւնագործութեան զարգացում անխորտակելիօրէն դէպի սոցիալիզմն է տանում» [1]։ Այս մի քանի խօսքերում ամփոփուած է սոցիալիզմի սոցիալ-դէմօկրատական թէօրիայի ամբողջ էութիւնը. դրա մէջ հէնց արտայայտուած է նրա այն հիմնական գաղափարը, որով սոցիալիստական շարժումը իր զարգացմամբ անքակտելի կերպով կապուած է ժամանակակից կապիտալիստական արտադրութեան զարգացման հետ։ Ահա այն տնտեսական յենարանը, որի վրայ ստեղծւում են, համաձայն այս հայեացքի, որոշ օբյեկտիւ պայմաններ, որոնք առաջացնում են սոցիալիստական շարժումը։ Եւ եթէ սոցիալիստական կուսակցութիւնները չեն ուզում օդում կախուած մնալ,—ասում են մեզ,—եթէ նրանք ուզում են սոցիալիզմի գիտական ըմբռնողութեան սահմաններում մնալ, որի էութիւնը հէնց նրանումն է, որ նա սոցիալիստական շարժման պատւանդանում դնում է մի այնպիսի դիմացկուն նիւթական հիմք, ինչպէս տարերապէս զարգացող տնտեսական պրոցէսն է,—ուրեմն նրանք իրենց բոլոր սոցիալիստական քաղաքականութեան մէջ պիտի անշեղ հետևեն իրենց այս գլխաւոր ուղեցոյց թելին՝ ժամանակակից արդիւնագործութեան զարգացման ներկայ կապիտալիստական կազմի պայմաններում։

Սոցիալիստ-յեղափոխականների կուսակցութիւնը, չը ժխտելով որոշ սահմաններում ուղղակի պատմական կապը կապիտալիստական արդիւնագործութեան զարգացման և սոցիալիստական շարժման զարգացման միջև, ժխտում է, որ այդ կապը ունենայ լրիւ հիմնաւորման նշանակութիւն, որոշ երևոյթի պատճառների այն լրիւ պարզաբանութեան նշանակութիւնը, որ կապուած է բնական գիտութիւններում պատճառի և հետևանքի հասկացողութեան հետ։ Կապիտալիստական զարգացման և սոցիալիստական շարժման միջև պատճառական կախումը խիստ սահմանափակող կերպով մեկնաբանելու անհրաժեշտութիւնը բղխում է հէնց միայն նրանից, որ ինչպէս յետոյ կը տեսնենք, այդ երկու երևոյթները ամենևին իրար չեն ծածկում ոչ այն ասպարէզների տեսակէտից, ուր նրանք զարգանում են, ոչ այն հասարակական տարրերի տեսակէտից, ո

[1]) «Die Agrarfrage» երես 296.

րանց նրանք ընդգրկում են իրենց զարգացման պրօցէսում, ոչ այն հասարակական ուժերի տեսակէտից, որ նրանց շարժման մէջ են գնում։ Այս երկու պրօցէսների բաղկացուցիչ տարրերի իրար չընկնելը, իհարկէ, խանգարում է նրանց մէջ լրիւ պատճառական կախում հաստատելուն։

Այսպիսով սօցիալիստ-յեղափոխականների ծրագիրը կատարելապէս ժխտում է այն զուգահեռականութեան հնարաւորութիւնը կապիտալիստական և սօցիալիստական զարգացման պրօցէսների միջև, որը հաստատում է սօցիալդէմօկրատական դպրոցը՝ երկու պրօցէսների զարգացման ոչ միայն ստորին, այլև բարձր աստիճաններում։ Փոխանակ այդ զուգահեռականութեան, սօցիալ-յեղափոխական դպրոցը, մինչև անգամ՝ ընդհակառակը, հաստատում է նրանց մէջ յեղափոխական ընդհարման անխուսափելիութիւնը, հետևաբար նաև դասակարգային կռիւ էլ, որը, ըստ զուգահեռութեան ուսմունքի, տարւում է բացառապէս կապիտալիստական կազմի շրջանակներում մինչև միակ և ընդհանուր սօցիալիստական յեղաշրջման մօմէնտը, արդէն բոլորովին ուրիշ բնաւորութիւն է ստանում՝ սօցիալիստական շարժման զարգացման պայմանների այս հասկացողութեամբ։

Սօցիալիստական շարժման այն յեղափոխական մօմէնտը, որը ըստ սօցիալ-դէմօկրատական թէօրիայի, զետեղւում է նրա զարգացման վերջաբանական աստիճանում, ըստ սօցիալիստ-յեղափոխականների ծրագրի տարածւում է նաև սօցիալիստական բարեփոխութեան ամբողջ նախապատրաստական ժամանակաշրջանի վրայ, հետևաբար մտնում է՝ նաև նրա նւազագոյն ծրագրի գործողութեան սահմանները։

Այսպէս են, ամենաընդհանուր գծերով, այն հիմնական թէզիսները, որոնցով կարելի է ամփոփել ամենագլխաւոր՝ թէօրիական տարաձայնութիւնները մեր քննելիք երկու սօցիալիստական դըպրոցների միջև։ Յետագայում շարադրութիւնս նկատի կառնի աւելի մանրազննին պարզաբանութիւնը ինչպէս այդ թէզիսների, նոյնպէս և նրանց հետ կապւած եզրակացութիւնների, որոնք առնչութիւն ունին նւազագոյն ծրագրի հետ։

# I

Ինչ վերաբերում է այն պատճառական կախումին, որը սօցիալ-դէմօկրատական թէօրիան հաստատում է սօցիալիզմի և

կապիտալիստական զարգացման միջև, ապա որպէսզի պարզաբանենք այս դէպքում գոյութիւն ունեցող զանազանութիւնը մեր քննութեան ենթակայ երկու հոսանքների միջև, անհրաժեշտ է ուշադրութիւն դարձնել, թէ ինչ անորոշ բնաւորութիւն ունի ինքը պատճառական կախումը բոլոր պատմական և հասարակական երևոյթների մէջ։

Քանի որ սօցիալիստական շարժումը ծնւում է կապիտալիստական կազմի ծոցում, քանի որ այդ շարժման ծագումն իսկ կապւած է կապիտալիստական փազիսի երևան գալու հետ, հասարակական զարգացման պրօցէսի մէջ, — ապա ուրեմն բոլորովին միտք չունի, որ որևէ թէօրիական դպրոց ժխտի հասարակ պատմական կապը մի կողմից սօցիալիստական շարժման և միւս կողմից կապիտալիստական յարաբերութիւնների տիրապետութեան միջև։ Դա մինչև անգամ ոչ թէ թէօրիայի, այլ փաստի խնդիր է։

Նոյն իսկ այն բանում, որը վերաբերում է աւելի կամ պակաս սերտ պատճառական կախումին կապիտալիստական արդիւնագործութեան զարգացման աստիճանի և սօցիալիստական շարժման զարգացման աստիճանի միջև, դարձեալ, այդպիսի ընդհանուր ձևակերպութեամբ, այդ պատճառական կախումը ոչ մի կասկածի չի կարող ենթակայ լինել։ Քանի որ սօցիալիստական շարժման աղբիւրը այն հասարակական հակառակութիւններն են, որոնք հիմնւած են արտադրութեան միջոցների ու գործիքների աշխատաւոր մասսաներից զատման վրա, և այդ հակառակութիւնները անխուսափելի կերպով աճում են արտադրութեան կապիտալիստական եղանակի շրջանի լայնացման հետ. քանի որ սօցիալիստական շարժումն իր էութեամբ ոչ այլ ինչ է, եթէ ոչ բանւորական մասսաների կողմից այն րէակցիան, որը հասարակութեան մէջ առաջանում է կապիտալիստական յարաբերութիւնների տիրապետութեամբ, — ապա ուրեմն՝ կապիտալիստական արդիւնագործութեան զարգացման աստիճանի և սօցիալիստական շարժման զարգացման միջև, այսինքն՝ որոշ երևոյթի ծաւալի և նրա առաջադրած րէակցիայի միջև որոշ կախում հաստատելը հազիւ թէ մինչևանգամ յաւակնութիւն կարողանայ ունենալ յատուկ սօցիօլօգիական օրէնք լինելու։

Որ կապիտալիստական արդիւնաբերութեան զարգացումը աւելի կամ պակաս չափով ներգործում է սօցիալիստական շարժման զարգացման վրա, այս բանը որոշ սահմաններում և այսպիսի ընդհանուր ձևով ընդունելու խնդրում գիտական սօցիալիզմի այս երկու դպրոցների միջև ոչ մի տարաձայնութիւն չի կարող գոյութիւն

ունենալ։ Այդ տարաձայնութիւնները սկսւում են միայն այն հարցի վերաբերմամբ, թէ արդեօք այդ ներգործութիւնը միայն մէկն է պատճառներից, որոնք պայմանաւորում են սօցիալիստական շարժման զարգացման ընթացքը, թէ՞ նա ընդգրկում է բոլոր այդ պատճառները և հետևաբար կարող է հիմք ծառայել գիտական սօցիալիզմի մի ամբողջ սիստէմ կառուցանելու համար։ Սօցիալ-դէմօկրատական դպրոցը անկողդողդ կանգնած է այս վերջին հայեցակէտի վրա, միևնոյն ժամանակ սօցիալիստական շարժման զարգացման պրօցէսի գիտական բացատրութիւնը կապելով դիալէկտիքական մէթօդի առանձին փիլիսոփայական սիստէմի հետ։ Սօցիալ-յեղափոխական դպրոցը ժխտում է սօցիալիզմի գիտական սիստէմ կառուցանելը այնպիսի հասարակական երևոյթների շրջանակում, որոնք միայն արտադրութեան կապիտալիստական եղանակի զարգացման պրօցէսի սահմաններումն են։ Զնայած սօցիալ-դէմօկրատական ուսմունքի առարջակած գիտական սօցիալիզմի ֆօրմուլայի պարզութեանը և վերջաբանուած լինելուն, յիշեալ դպրոցը չի կարող չը համարել այդ հակասող հասարակական կեանքի զարգացման բարդ պայմաններին. այդ պատճառով էլ, իր կողմից չառաջադրելով ոչ մի միակ և համայն ամփոփ ֆօրմուլա,—որովհետև ժամանակակից սօցիօլօգիան այդպիսին դեռ չի գտել—այդ դպրոցն առաջարկում է սօցիալիստական հարցերում առաջնորդուել այն մասնակի ընդհանրացումներով և օրէնքներով, որոնք ներկայումս սօցիալական գիտութիւններում արդէն հաստատուած են։

Հեշտ է նկատելը, որ սօցիալիզմի սօցիալ-դէմօկրատական ֆօրմուլայի ճշմարիտ և ոչ ճշմարիտ լինելու խնդիրը ամբողջապէս կենտրօնանում է այն հարցում, թէ ինչ չափով կապիտալիստական արտադրութեան եղանակի պրօցէսը իրապէս ընդգրկում է սօցիալիստական շարժման զարգացումը. ինչ չափով առաջին պրօցէսը պարունակում իր մէջ երկրորդի զարգացման բոլոր պայմանները։ Եթէ սօցիալիստական շարժման այդպիսի լրիւ պատճառական կախումը կապիտալիստական զարգացումից ամուր հաստատուած լինէր, այդ դէպքում սօցիալ-դէմօկրատական թէօրիան իր տակ հաստատուն հող կունենար։ Այն ժամանակ որոշ հասարակական պրօցէսի ընդգրկած բոլոր երևոյթները կարելի կըլինէր մտցնել բուրժուական հասարակութեան մէջ զարգացող կապիտալիստական արդիւնաբերական եղանակի շրջանակի մէջ, որի ծոցում կըծնուէր և աւելի ու աւելի կըլայնանար սօցիալիստական շարժումը ի դէմս կազմակերպուած պրօլէտարիատի չարունակ աճող մասսաների։

Այն ժամանակ բուրժուական հասարակութեան սօցիալիստական ձեւափոխման ամբողջ պրօցէսը կարելի կըլինէր սերտ կերպով համաձայնեցնել տնտեսական մատերիալիզմի հիմնական դրութիւնների հետ։ Այն ժամանակ կապիտալիստական կազմի ծոցում սօցիալիստական անխուսափելի լեղաշրջումը նախապատրաստելու ամբողջ պրօցէսը կարելի կըլինէր նախապէս ընդնշմարել, իր զարգացման բոլոր աստիճաններում, հետեւեալ գլխաւոր գծերով.—հասարակութիւնը կապիտալիստական զարգացման ֆազիսի մէջ մտնելու հետ միաժամանակ, նրա ներսում կըծագէր մի իւրատեսակ առանձնացած կապիտալիստական օրգանիզմ, որի կազմի մէջ կըմտնէր կապիտալիստական արտադրութեան հետ կապուած հասարակական յարաբերութիւնների ամբողջ շրջանը. շրջապատող անշարժ հասարակական միջավայրից դուրս եկած այս զարգանալիք միջուկը կարող էր սկզբում մինչեւանգամ շատ էլ մեծ չըլինել, բայց յետոյ՝ հնազանդուելով խոշոր կապիտալիստական արդիւնագործութեանը յատուկ օրէնքներին, նա մի կողմից՝ աւելի և աւելի կընդարձակէր իր ծաւալը, կլանելով և ներլուծելով իրեն շրջապատող հասարակական միջավայրի նորանոր շրջաններ, իսկ միւս կողմից՝ իր ծոցում կընախապատրաստէր ապագայ սօցիալիստական կազմի տարրերը, և նրա ամենամեծ զարգացման րոպէն, այն րոպէն, երբ նա տարածուած կըլինէր արդիւնաբերական և հասարակական կեանքի բոլոր շրջանների վրա, կըզուգադիպէր նրա մէջ այն րոպէին, երբ այնտեղ վերջնականապէս մշակուած են բոլոր նիւթական և ոգեկան պայմանները, որ անհրաժեշտ են իրերի նոր դրութեան անցնելու համար։ Ապա կըհասնէր ճգնաժամի րոպէն, սօցիալիստական ձեւափոխութեան ժամանակաշրջանը, պրօլէտարիատի դիկտատուրայի շրջանը, բուրժուական կազմի լիկվիդացիայի և ժողովրդական տնտեսութեան ամբողջ սիստէմի վերակազմութեան շրջանը՝ հիմք դարձնելով արտադրութեան միջոցների հասարակական սեփականութիւնը և աշխատանքի հասարակական կազմակերպութիւնը։

Ինչպէս յայտնի է, հէնց այս ձեւով էլ պատկերանում է սօցիալ-դէմօկրատական տեսակէտից այն ամբողջ պրօցէսը, որով զարգանում է սօցիալիստական շարժումը և բուրժուական հասարակութեան ծոցում նախապատրաստւում են բոլոր անհրաժեշտ պայմանները սօցիալիստական վերակազմութեան համար։ Բայց որպէսզի այս թէօրիական ուրուագիծը իր տակին իրական հիմք ունենայ, կատարելապէս անհրաժեշտ է, որ արտադրութեան կապիտալիստական

եղանակը, եթէ միակ ազդիչ ձեւափոխող հասարակական ուժերը իրապէս ընդգրկէր իր զարգացման պրոցէսի ընթացքում որոշ երկրի արդիւնագործութեան բոլոր գլխաւոր ճիւղերը.—և ապա՝ որ նա ճէնց այդ երկրում կենտրոնացնէր բոլոր այն ձեւափոխող ազդեցութիւնները և ուժերը, որոնց նա իր զարգացման պրոցէսում առաջացնում է։ Հակառակ դէպքում, այսինքն՝ եթէ այդ պրոցէսը իրականութեան մէջ չի ընդգրկում որոշ երկրի ամբողջ տնտեսական կեանքը, կամ թէ չէ՝ այդ երկրում միայն չեն լինի կենտրոնացած այդ պրոցէսի կազմակերպիչ և ստեղծագործող կողմերը, ապա ուրեմն այդ դէպքում որոշ տնտեսական ներգործութիւնը, որքան էլ որ մեծ ձեւափոխող ուժ ունենայ, իր ազդեցութեան սֆերայով չի զուգադիպիլ որոշ բուրժուական հասարակութեան սահմաններին և հետեւաբար չի կարող նրանում սոցիալիստական յեղաշրջումը պայմանաւորել։

Այս անպայման անհրաժեշտութիւնը, որ կապիտալիստական զարգացման ձեւափոխող ազդեցութիւնը զուգադիպի այն բուրժուական հասարակութեան շրջանակին, որտեղ նա կատարւում է,- ենթադրւում է նաև սոցիալ-դէմոկրատական թէօրիայի գիտական սոցիալիզմի այն փիլիսոփայական հիմնաւորմամբ, որը նա գտնում է դիալէքտիկական մեթոդին վերաբերող ուսմունքի մէջ։

Այս փիլիսոփայական սիստէմի էութիւնը, ինչպէս յայտնի է,- այն հիմնական դրութիւնն է, որ իւրաքանչիւր երեւոյթ պիտի ըմբռնել և ուսումնասիրել նախ նրա զարգացման պրոցէսում (որով և դիալէկտիքական մէթօդը, իրենից մի բնուրոյն բան չըներկայացնելով, զուգադիպում է անգլիական էւօլիւցիական դպրոցի հիմնական պահանջին). և ապա՝ ինչպէս մի երեւոյթ, որ այդ պրոցէսում որոշ հետեւողական աստիճաններ է անցնում, որոնցից իւրաքանչիւր յաջորդ աստիճանը նախորդի բացասումն է։ Այս փիլիսոփայական սիստէմի կողմնակիցների կարծիքով բացասման եղանակով զարգացման պրոցէսը կազմում է օրէնք ամեն մի զարգացման համար, տիեզերական օրէնք բոլոր փոփոխութիւնների, որոնք առաջանում են ինչպէս բնութեան մէջ, նոյնպէս և հասարակական կեանքում, հետեւաբար և օրէնք այն հասարակական վերակազմութեան համար, որը պիտի բուրժուական—կապիտալիստական կազմը սոցիալիզմի հասցնի։

Յաջորդ աստիճանը իր նախորդ աստիճանին բացասելու եղանակով զարգացման այս օրէնքի մէջն է, որ սոցիալ-դէմոկրատական դպրոցը գտնում է իր թէօրիայի գիտականութեան բարձրագոյն փիլիսոփայական սրբագործումը, որովհետև, նրա կարծիքով, այդ

տիեզերական օրէնքը նրա թէօրիային էլ կատարելապէս կիրառելի է։

Եւ իսկապէս, սօցիալիզմի սօցիալ-դէմօկրատական թէօրիայի գլխաւոր առանձնայատկութիւնը նրանումն է, որ նա սօցիալիզմի անհրաժեշտ նախադուռն է համարում արտադրութեան կապիտալիստական աստիճանը, որն ուղղակի նրա հակապատկերն է։ Այսպիսով, այստեղ զարգացումը կատարւում է արտադրութեան կապիտալիստական եղանակից դէպի սօցիալիստականը՝ բացասման մէթօդով։ Այն եզրակացութիւնը, որի մասին խօսում է Կաուցկին, իբրև մարքսիզմի հիմնական թէզիսի մասին՝ «ժամանակակից արդիւնագործութեան զարգացումն անհրաժեշտօրէն դէպի սօցիալիզմն է տանում»,—հէնց դիալէկտիքական մէթօդի ճանապարհով է ստացւած.—քանի որ կապիտալիզմը սօցիալիզմի հակադրութիւնն է (անտիթէզ), ապա ուրեմն իր զարգացման պրօցէսում նա պիտի հասցնի սօցիալիզմի, որպէս իր սեփական հակապատկերի։ Միւս կողմից՝ անկարելի կըլինէր սօցիալիստական արտադրութեան եղանակի առաջ գալը առանց իրեն նախորդող կապիտալիստական արտադրութեան եղանակի աստիճանի, որովհետև կըխախտէր ընդհանուր զարգացման օրէնքը ըստ դիալէքտիքական մէթօդի, չէր լինի հետևանք այն բանի նրանք որոշ հասարակական կազմակերպութիւն իր զարգացման պրօցէսում իր սեփական հակապատկերին չէ փոխարկւում։

Բայց հեշտ է նկատել, որ սօցիալ-դէմօկրատական թէօրիայի գիտականութիւնը այսպիսի եղանակով պնդելիս էլ մենք կրկին հանդիպում ենք այն անհրաժեշտութեանը, որ որոշ երկրի կապիտալիստական զարգացումը պիտի ամբողջովին ընդգրկի ամբողջ սօցիալիստական շարժումը, որ վերջինս պիտի ամբողջութեամբ մտնի նրա շրջանակի մէջ, ծնունդ առնի և զարգանայ նրա սեփական ծոցում։ Այս դէպքում աւելի ևս ակնայայտնի կերպով առաջ է գալիս երկու պրօցէսների՝ կապիտալիստական զարգացման և սօցիալիստական յեղաշրջման՝ սահմանների և եզրների զուգադիպելու անհրաժեշտութիւնը, քանի որ ըստ դիալէկտիքական մէթօդի իմաստի, այստեղ խնդիրը կարող է վերաբերել միայն էւօլիւցիայի ենթարկւած, օբյեկտի, միևնոյն անհատական կամ հասարական օրգանիզմի՝ զարգացման մի աստիճանից դէպի միւսն անցնելուն։ Արտադրութեան կապիտալիստական և սօցիալիստական կազմակերպութիւններն այստեղ ներկայանում են իբրև միևնոյն էւօլիւցիայի ենթակւած երևոյթը, բայց որը միայն, ըստ բացասման մէթօդի, այլաձևութեան է ենթարկւում։ Պարզ է ուրեմն, որ այս

պլաձևութիւնը ոչ մի կերպ չէր կարող ընդգրկել արդիւնագործութեան և հասարակական յարաբերութիւնների այն շրջանները, որոնք նախապէս կապիտալիստական արտադրութեան եղանակին չեն ենթարկուել. այնտեղ, ուր կապիտալիստական զարգացման նախորդող աստիճան չէ եղել, այնտեղ չէր էլ կարող լինել այդ նախորդող կապիտալիստական աստիճանի բացասումը։ Այս ամբողջ սիստէմի էութիւնը, որ հասարակական զարգացման ընթացքը հպատակեցնում է իրար փոխարինող աստիճանների օրէնքին, հէնց նրանումն է, որ նա պիտի ընդունի իբրև բոլորովին աներևակայելի, իբրև բնական կարգին հակասող մի բան, արտադրութեան սոցիալիստական եղանակի ծագումը արդիւնագործութեան մի այնպիսի շրջանում, որը նախապէս չէ անցել արտադրութեան կապիտալիստական եղանակի աստիճանը։ Յայտնի է, որ սոցիալդէմօկրատական թէօրիան այդ հիման վրա է, որ ժխտում է մանր գիւղացիական տնտեսութիւնից հողերի համայնացմանը (սոցիալիզացիա) անցնելու հնարաւորութիւնը, և յետոյ արտադրութեան համայնացմանը,—քանի որ այսպիսի փոխանցման դէպքում տեղի չի ունենալ անմիջական արտադրողների հողի սեփականութեան իրաւունքի բացասման առաջին աստիճանը, այսինքն՝ աշխատաւոր գիւղացիութեան սեփականազրկութիւնը (էքսպրօպրիացիա), այլ միանգամից հասած կըլինէր երկրորդ աստիճանը, այսինքն՝ բացասման բացասումը, կամ սեփականազրկողների սեփականազրկումը (էքսպրօպրիատորների էքսպրօպրիացիան)։

Այսպիսով մենք տեսնում ենք, որ գիտական սոցիալիզմի սոցիալդէմօկրատական թէօրիան, հիմնուած այն պատճառական կախումի վրա, որ ունի սոցիալիստական շարժումը կապիտալիստական արդիւնագործութեան զարգացումից, սոցիալիստական յեղաշրջման այն պատմական-մատէրիալիստական ըմբռնողութեան վրա, որի համեմատ՝ հէնց ինքը արտադրութեան կապիտալիստական եղանակի զարգացումը, որպէս մի հիմնական տնտեսական հոսանք, ծնում է այդ յեղաշրջման բոլոր անհրաժեշտ պայմանները,—և վերջապէս ամրապնդուած դիալէկտիքական մէթօդի փիլիսոփայական սրբագործմամբ, մի անհրաժեշտ պայմանի կարիք ունի, որպէսզի ուղիղ կերպով կիրառւի կապիտալիստական երկրների հասարակական զարգացման պրօցէսում, այն է—որ այդ երկրներում տեղի ունեցող արդիւնագործական զարգացումը ձգտի իր յեղափոխիչ ազդեցութեամբ ընդգրկել որոշ հասարակութեան տնտեսական կեանքի բոլոր գլխաւոր շրջանները, և որպէսզի, միւս կողմից, որոշ երկրի կապիտալիստա-

կան զարգացման հետ կապուած ամբողջ ձեւափոխող ներգործութիւնը իր սեփական սահմաններում իրականանալ։ Իսկ հիմա տեսնենք, թէ այդ տեսակէտից ինչպէս է իրերի այն փաստական դրութիւնը, որին հասնում են զանազան կապիտալիստական երկրներ իրենց զարգացման պրոցէսում։

***

Եթէ մենք կապիտալիստական երկրները զննելու լինենք ըստ արագութեան և յաջողութեան աստիճանի, որով նրանցում կապիտալիստական արտադրութիւնը զարգացել է, ապա ուրեմն նրանց գլխում անշուշտ պիտի դասել Անգլիան, որպէս կապիտալիզմի դասական երկիր. պիտի ասել նաև, որ նրա ամենաբնորոշ յատկանիշներից մէկն էլ այն հանգամանքն է, որ նրա արդիւնագործութեան անսովոր յաջողակ աճման նախորդում էր, իսկ մասամբ էլ ուղեկցում էր, անգլիական գիւղացիութեան կատարեալ հողազրկումը, մանր գիւղատնտեսութեան կատարեալ անհետանալը։ Շնորհիւ սրա՝ Անգլիան միակ երկիրն է, որտեղ խոշոր կապիտալիստական արդիւնաբերութիւնը իրապէս ընդգրկում է ազգային արտադրութեան բոլոր գլխաւորագոյն ճիւղերը՝ սրա մէջ հաշուած նաև գիւղատնտեսութիւնը, այնպէս որ, եթէ մի կողմ թողնենք մանր արհեստների այն ճիւղերը, որոնց ինչպէս գործը ցոյց է տալիս, խոշոր արտադրութիւնը չի կարող դուրս վանել մինչևանգամ իր զարգացման բարձրագոյն աստիճաններում, և որոնք անհրաժեշտօրէն պիտի նրան ուղեկցեն, [1]) էլի Անգլիայի վերաբերմամբ կարելի է ասել, որ նրա կապիտալիստական զարգացման շրջանը ոչ

---

1) «Պէտք է նկատել, որ կապիտալի կենտրոնացման հետ, ինչպէս Մարքսն էր այն հասկանում, միաժամանակ կարող է լինել ոչ միայն պահպանելը՝ այլև որոշ աճումը մանր տնտեսութիւնների քանակի, և ոչ միայն երկրագործութեան, այլ նաև քաղաքային ինդուստրիայի և առևտրի մէջ...» Քանի արագ է ընթանում կապիտալի կենտրոնացումը, քանի նա աւելի արագ է քայքայում սկզբնական մանր տնտեսութիւնները և աւելացնում բանուորների պահեստի բանակը, այնքան աւելի ուժեղ կերպով է արտայայտւում ազատուած բանուորական ձեռքերի ձգտումը՝ հիմնելու կամ պահպանելու մանր տնտեսութիւնները։ Մի ասպարէզում մանր տնտեսութիւնների դուրս վանելը համապատասխանում է նրանց աճմանը մի ուրիշ ասպարէզում»... (Կաուցկի, «Էրֆուրտեան ծրագիր» հինգերորդ գերմանական հրատարակութեան յառաջաբանից)։

միայն ծածկում է—եթէ կարելի է այսպէս ասել—նոյն իր Անգլիայի նացիոնալական մակերևոյթը, այլ, ինչպէս ներքևում կըտեսնենք, նրա սահմաններից շատ դէնն է անցնում։

Ուրիշ կապիտալիստական երկրներում, ինչպէս օրինակ Գերմանիայում կամ Ֆրանսիայում, աւատական—միապետական հասարակական կազմից դէպի բուրժուական—ռամկավարականը փոխանցելուն չէ ուղեկցել, ինչպէս Անգլիայում, այն, որ ազնուականների հողերը կատարելապէս մաքրւէին մանր գիւղացիութիւնից. այդ պատճառով էլ այդ տեղերում, չընայած կապիտալիստական արտադրութեան բաւական խոշոր զարգացմանը, հողագործ ազգաբնակութեան տոկոսը դեռ ևս միւս ազգաբնակութեան շատ զգալի մասն է կազմում.—Գերմանիայում՝ 35%, իսկ Ֆրանսիայում՝ մօտ 45%։

Ժամանակակից արդիւնաբերօրէն—զարգացած երկրների այս երկու գլխաւոր տիպարները՝ նրանցում պահպանւած կամ անհետացած մանր գիւղացիական տնտեսութեամբ, արդէն կարող են մեզ տալ բոլոր անհրաժեշտ փաստերը մեզ հետաքրքրող խնդրի պարզաբանութեան համար։

Այն երկրներում, որտեղ մանր գիւղացիական տնտեսութիւնը պահպանւել է, կապիտալիստական արդիւնագործութեան հնարաւոր տարածման սահմանները որոշւում են հէնց այն չափերով, որոնցով նրանցում ներկայումս պահպանւել է այդ մանր գիւղացիական տնտեսութիւնը, որովհետև շնորհիւ գիւղատնտեսական արտադրութեան ուրոյն պայմանների, նոյնպէս շնորհիւ անդրատլանտեան բերրի հողերի ազդեցութեանը հացի համաշխարհային շուկայի վրա՝ իրերի այդ դրութիւնը այս կապիտալիստական երկրներում, այսինքն՝ նրանցում խոշոր կապիտալիստական գիւղատնտեսութեան հետ կողք-կողքի մանր գիւղական տնտեսութեան գոյութիւն ունենալը, պէտք է ճանաչւի իբրև մի դրութիւն, որը բուրժուական — կապիտալիստական զարգացման սահմաններում մեծ փոփոխութիւնների չէ ենթարկւելու։ Այս փաստի դէմ այժմ չեն վիճում, ինչպէս յայտնի է, մինչևանգամ մանր գիւղացիութեան անխուսափելի անհետացման գաղափարի նախկին կուսակիցները։

«Մի կարևոր կէտում,—գրում է այժմ նոյն իսկ Կաուցկին,—մենք պիտի վերանայենք մեր հայեացքները։ Գիւղացին այնպէս արագ չի անհետանում, ինչպէս մենք սպասում էինք։ Վերջին տասնամեակներում նա միայն շատ դանդաղ է կորցնում իր դիր-

քերը, եթէ միայն առհասարակ կորցնում է։ Զարգացման ապագայ ընթացքը սակայն այժմ չի կարելի նախատեսնել... բայց յամենայն դէպս, մեր պատմական շրջանահայեացքի սահմաններում, մենք ոչ մի հիմք չունենք սպասելու մանր գիւղական տնտեսութեան արագ անկումը Եւրոպայում, ճիշտ այնպէս, ինչպէս որ մենք փաստ չունենք հակառակը ենթադրելու և յոյսեր ունենալու, որ մանր տնտեսութիւնը նշանակալից յաջողութիւններ կունենայ և որ նա դուրս կըվանի գիւղական խոշոր արտադրութիւնը»։ 1)

Կաուցկին դեռ աւելի առաջ էլ նոյն եզրակացութեանն էր եկել ագրարային հարցին վերաբերեալ իր գրքում, որտեղ նա մի իւրատեսակ հաւասարակշռութիւն է չեշտում գիւղատնտեսութեան խոշոր և մանր արտադրութիւնների միջև.— «Այնպէս, ինչպէս և խոշոր տնտեսութիւնը մանրին դուրս վանելիս,—կարդում ենք մենք այնտեղ,—հակառակ պրօցէսն էլ է ինքն իրեն սահմաններ դնում... Արտադրութեան կապիտալիստական եղանակի տիրապետութեան ժամանակ մենք նոյնքան քիչ կարող ենք սպասել խոշոր գիւղական տնտեսութեան անհետացումը, ինչպէս և մանր դիւղական տնտեսութեան անհետացումը»։ 2)

Այսպիսով, բոլոր կապիտալիստական երկրներում, ուր մանր գիւղացիական տնտեսութիւնը պահպանւել է, կապիտալիստական խոշոր արդիւնագործութիւնը, ինչպէս երևում է, իր զարգացման պրօցէսում այլևս հնարաւորութիւն չի ունենալ ընդգրկելու ազգային արտադրութեան բոլոր շրջանները նրա հետ կապւած բոլոր հասարակական յարաբերութիւններով հանդերձ և հետևաբար հնարաւորութիւն չի ունենալ այդ շրջանի վրա իր ձևափոխող ներգործութիւնը տարածելու։ Այս ամբողջ շրջանը դուրս գցած կմնայ բուրժուական հասարակութեան դիալէկտիքական ձևափոխութեան այն պրօցէսից, որի ձևով պիտի առաջանար սօցիալիստական յեղաշրջումը, համաձայն սօցիալ-դէմօկրատական թէօրիայի։ Ուստի, եթէ մենք թոյլ չըտանք նրա մէջ այլ յեղափոխական ուժերի մասնակցութեան հնարաւորութիւնը, բացի նրանցից, որոնք նախապատրաստւում են բացառապէս կապիտալիստական արդիւնագործութեան զարգացման պրօցէսում, այն ժամանակ ինքը՝ սօցիալիստական յեղաշրջման իրականալիութիւնը այդպիսի բուժուական հասարակութիւն-

---

1) «Sozialismus und Landwirtschaft,» Neue Zeit, 1903, № 22.

2) «Die Agrafrage», գերմ. հրատ. 1899 թ., երես 160-161։

ների մէջ կը դառնայ արդէն առաւել կամ պակաս կասկածելի, համենայն այն կրաւորական կամ մինչեւանգամ ներգործական դիմադրութեան, որին սօցիալիստական շարժումը անխուսափելիօրէն պիտի հանդիպի, համաձայն սօցիալ-դէմօկրատական Թէօրիայի, հասարակական կեանքի այն շրջաններում, որոնց իրենց տնտեսական զարգացման յետամնացութիւնը կըհեռացնի այդ շարժումից։

Ցիրաւի, եթէ տնտեսական զարգացումն իսկապէս վճռական նշանակութիւն ունի սօցիալիստական յեղաշրջումը նախապատրաստելու հարցում, և եթէ բացասման եղանակով իրար փոխարինող յաջորդական աստիճանների օրէնքն իսկապէս զարգացման տիեզերական օրէնք է, ուրեմն մանր գիւղացիութիւնը, օրինակի համար, որին դեռ կապիտալիստական զարգացման աստիճանը չէ ընդգրկել, անհրաժեշտաբար պիտի յետադէմ մնայ սօցիալիստական յեղաշրջման վերաբերմամբ. հակառակ դէպքում այս սօցիալիստական օրէնքի պարտաւորիչ ուժը կատարելապէս անհետանում է։ Երբ Էնգէլսը իր յայտնի յօդուածում՝ «Գիւղացիական հարցի մասին Ֆրանսիայում և Գերմանիայում» գրում է. — «Միթէ չի կարելի գիւղացիներին հասկացնել, որ նրանց սեփական շահերն են պահանջում իրենց տուն ու տեղը և հողային սեփականութիւնը ընկերական սեփականութիւն և ընկերական արտադրութիւն դարձնելը», — ապա ուրեմն այդ խօսքերով նա քանդում է սօցիալիզմի ուղղափառ ըմբռնումի ամբողջ իլլիւզիան, քանի որ մեծ տարակուսանք է արտայայտում այն բանի վերաբերմամբ, թէ դէպի սօցիալիստական կազմը փոխանցնելու նախապատրաստութեան պրօցէսում անհրաժեշտ է անցնել զարգացման կապիտալիստական աստիճանը։ Երբ խօսքը սօցիօլօգիական օրէնքին է վերաբերում, ապա ուրեմն այդ տեսակ տարակուսանքներ թոյլատրելի չեն.—կամ այո, կամ ոչ. կամ բուրժուական հասարակութեան ձևափոխութիւնը հընարաւոր է միայն կապիտալիստական զարգացման պրօցէսում, այն ժամանակ գիւղացիական մանր տնտեսութեան շրջանը չի կարող դրա համար նախապատրաստուած լինել ոչ ոգեկան և ոչ նիւթական կողմից. կամ թէ չէ գոյութիւն չունի ինքն այդ օրէնքը, որը սօցիալիստական շարժումը հպատակեցնում է կապիտալիստական արդիւնագործութեան զարգացմանը։

Ահա թէ ինչու, սօցիալ-դէմօկրատական դպրոցի հայեցակէտից, գիւղատնտեսական արտադրութեան ամբողջ շրջանը կարող է սօցիալիստական յեղաշրջման համար հասանելի լինել միայն այն չափով, որ չափով նա բռնուած է խոշոր կապիտալիստական արտա-

դրութեամբ, և ահա թէ ինչու մանր գիւղացիութեան անխուսափելի անհետացման թէզիսը այդպէս երկար ու յամառ կերպով պաշտպանւում էր մարքսիստական գրականութեան մէջ։

Բայց վերջիվերջոյ այդ պաշտպանները անհնարին դարձան։ «Ոչ մի կասկած չըկայ,—գրում էր Կաուցկին դեռ 1899 թւին,—որ գիւղատնտեսութիւնը նոյն կաղապարով չի զարգանում, որով կատարւում է քաղաքային արդիւնաբերութեան զարգացումը. նա իր սեփական օրէնքներին է ենթարկւում»։ [1]) Այնինչ այդ սեփական օրէնքները, ինչպէս հէնց այժմ տեսանք, կատարելապէս հակասում են սօցիալ-դէմօկրատական օրէնքին զարգացման կապիտալիստական աստիճանի վերաբերմամբ։

Բայց հէնց գիւղատնտեսութեան մէջ էլ նոյն այդ խոշոր կապիտալիստական արտադրութեան շրջանը ամենևին միևնոյն հետևանքները չի տալիս, սօցիալիստական շարժման պայմանների նախապատրաստութեան տեսակէտից, ինչպիսին նա տալիս է քաղաքային արդիւնագործութեան շրջանում—գոնէ այն բանում, ինչ վերաբերում է այդ շարժման գլխաւոր գործօնին՝ վարձու աշխատանքի ներկայացուցիչներին։

«Ինչքան էլ որ բոլոր գլխաւոր կէտերում գիւղական պրոլէտարների շահերը միևնոյն են քաղաքային պրոլէտարների շահերի հետ,—կարդում ենք Կաուցկու գրքում,—բայց ժամանակակից պրոլէտարիատի մեր ամբողջ բնորոշումը ոչ մի կերպ չի կարելի կիրառել նաև նրանց վերաբերմամբ»։ [2])

Եւ ապա նա տալիս՞ է հետևեալ շատ անմխիթար բնորոշումը գերմանական գիւղական պրոլէտարիատի զանազան կաթէգորիաների.

«Գիւղական վարձու բանւորների այս բոլոր կաթէգորիաները ապրում են դեռ ևս աւատական յարաբերութիւնների մէջ, որպէս ուրիշի տնտեսութեան բաղկացուցիչ մասեր և յաւելւածներ։ Մինչևանգամ աշխատանքի ժամանակից դուրս էլ նրանք տիրոջ հսկողութեանն են ենթակայ. Նրանց զւարճութիւնները, նրանց ընթերցանութիւնները և նոյն իսկ նրանց մասնաւոր ժողովները նրա կօնտրօլին են ենթակայ։ Նրանք միութիւնների իրաւունք չունեն մինչևանգամ այնտեղ, ուր նրանցից այդ իրաւունքը

---

1) «Аграрный вопрос», ներածութիւնը։
2) Նոյն տեղում, գերմ. հրատ. 314 երես։

օրէնքով չէ խլւած։ Նրանք չեն համարձակւում կարդալ այն լրագիրները, որոնք նրանց տէրերին դուր չեն գալիս. և որտեղ հնարաւոր է, նրանց հրահանգում են, թէ ընտրութիւնների ժամանակ նրանք իրենց ձայնը ում պիտի տան։ Իսկ այն հանգամանքը, որ նրանք հնարաւորութիւն ունեն խնայողութիւն անելով ինքնուրոյն վիճակի տէր դառնալ, հաւասարեցնում է գիւղատնտեսական բանւորների այս կաթէգորիաները հին ժամանակների ճորտերին, որոնք նոյնպէս հնարաւորութիւն ունէին փողով գնել իրենց ազատութիւնը»։

«Վարձու բանւորների այսպիսի դասակարգը,—այսպէս է վերջացնում Կաուցկին իր բնորոշումը,—հակւած է դէպի յուսահատութեան բռնկումները և բունտերը, երբ նրա հետ անչափ վատ են վարւում. բայց նրա դրութիւնը չի նպաստում կազմակերպւած, սիստեմատիկ և տևական դասակարգային կռիւ մղելուն։ [1])

Բայց չէ՞ որ Գերմանիայում այդպիսի գիւղական—վարձու բանւորների թիւը հասնում է մինչև 6 միլիօնի։ Պարզ է նոյնպէս, որ գերմանական գիւղական պրօլէտարիատի այս բոլոր առանձնայատկութիւնները պատահական չեն, միայն Գերմանիային չեն յատուկ, այլ բղխում են խոշոր կապիտալիստական արտադրութեան առանձին պայմաններից երկրագործութեան մէջ։ Բանւորների համեմատական փոքր թիւը մինչև անգամ մեծ կալւածքներում, քաղաքների քաղաքական կեանքի հետ ուղղակի չփման բացակայութիւնը, երկրագործութեան մէջ կապիտալիստական զարգացման դանդաղ ընթացքը,—մի խօսքով այն բոլորը, ինչոր Կաուցկին անւանում է «գիւղատնտեսութեան յատուկ օրէնքներ», առանձնացնում է այս շրջանը կապիտալիստական զարգացման ընդհանուր պրօցէսից, իբրև յետամնաց շրջան, և հետևաբար փաստօրէն նրան մէկուսացնում է սօցիալիստական շարժման և սօցիալական յեղաշրջման մէջ մասնակցելուց,—որովհետև կապիտալիստական զարգացման շատ ցածր աստիճանը, որի սահմաններում բանւորական մասսաները «հակւած են յուսահատութեան բռնկումների և բունտերի», բայց ընդունակ չեն սիստեմատիկ դասակարգային կռիւ մղելու, պարզ է որ չի կարող այն հետևանքները տալ, որոնք կարող են ստացւել միայն կապիտալիստական զարգացման բարձրագոյն աստիճանից։ [2])

---

[1]) Նոյն տեղում։

[2]) Իհարկէ սօցիալ-դէմօկրատական թէօրիայի հայեցակէտից։ Մեր պատճառաբանութեանը ամենևին չի հակասում այն փաստը, որ գերմանա-

Այսպէս է իրերի փաստական վիճակը կապիտալիստական երկրներում, ուր մանր գիւղացիական տնտեսութիւնը պաշտպանուել է սօցիալիզմի սօցիալ-դէմօկրատական թէօրիայի հայեցակէտից։ Այս դրութեան իտօգները ստիպում են յանգել այն եզրակացութեան, որ այնտեղ, ուր գիւղատնտեսական արտադրութիւնը մինչև նուազագոյն չափերը չէ հասած, ինչպէս ժամանակակից Անգլիայում, այնտեղ ազգային արդիւնաբերութեան այս շրջանը՝ նրա հետ կապուած հասարակական յարաբերութիւններով հանդերձ,—լինի նա մանր գիւղացիութեան ձեռքում, թէ որոշ չափերով արտադրութեան կապիտալիստական եղանակին անցած,—պէտք է զատել այն ռայօնից, որտեղ տեղի է ունենում բուրժուական հասարակական կազմի սօցիալիստական ձևափոխման պրօցէսը՝ արդիւնագործական զարգացման ազդեցութեան տակ։ Այդ շրջանի սահմաններում, ըստ սօցիալ-դէմօկրատական թէօրիայի, չեն նախապատրաստւում ոչ նիւթական և ոչ ոգեկան պայմաններ, որոնք անհրաժեշտ են սօցիալիստական յեղաշրջումը իրագործելու համար, և հետևաբար տնտեսական և հասարակական յարաբերութիւնների այս ամբողջ շրջանը պիտի մի ուղղակի արգելք հանդիսանայ կապիտալիստական հասարակական կազմից դէպի սօցիալիստականը փոխանցելու համար։ Այսպիսով, կապիտալիստական զարգացմամբ ընդգրկուած շրջանը այստեղ չէ ծածկում որոշ հասարակական կազմի ամբողջ սօցիալիստական մակերևոյթը, և չէ ծածկում այն չափով, որը համապատասխանում է այդ երկրի գիւղատնտեսական արտադրութեան յարաբերական չափին։

---

Հիմա տեսնենք, թէ ինչ վիճակի մէջ է գործը այն դէպքում, երբ արդիւնաբերական զարգացումը կատարւում է մի կապիտալիստական երկրի մէջ առանձնապէս նպաստաւոր պայմաններում՝ գիւղացիութիւնը կատարելապէս հողազրկուած է, և համարեա բոլորովին դուրս է վանուած գիւղատնտեսական արդիւնաբերութիւնը։

---

կան սօց.-դէմ. կուսակցութիւնը շատ կողմնակիցներ է գտնում գիւղական պրօլէտարիատի մէջ, ինչպէս և գտնում է այդ սակաւահող գիւղացիութեան մէջ։ Ընդհակառակը, այս փաստը կատարելապէս հակասում է միայն սօցիալ-դէմօկրատիական թէօրիային, քանի որ սօցիալիստական շարժման այս կողմնակիցները յարել են նրան ո չ  ի բ ր և  հ ե տ և ա ն ք որոշ արդիւնաբերական շրջանի կապիտալիստական զարգացման բարձր աստիճանի։

կապիտալիզմի այդպիսի դասական երկիր, ինչպէս տեսանք, Անգլիան։ Այնտեղ գիւղական ազգաբնակութիւնը, որ XVII դարի վերջում ամբողջ ազգաբնակութեան 80 %-ն էր, ներկայումս հաշւում է ոչ աւելի 10 %-ից, միեւնոյն ժամանակ նա իր համար հարկաւոր գիւղական արդիւնքների երեք քառորդը ստանում է արտասահմանից։ [1])

Թւում է թէ գործի այսպիսի վիճակում կապիտալիստական զարգացման պրօցէսը՝ իրեն յատուկ յեղափոխական միտումներով դէպի կապիտալիստական կազմը, պիտի որ իսկապէս ընդգրկէր անգլիական հասարակական կեանքի բոլոր շրջանները և յաջողութեամբ նախապատրաստէր այդ բոլոր շրջաններում նիւթական և ոգեկան պայմանները դէպի սօցիալիստական կազմը փոխանցնելու համար։ Այդպէս էլ պատկերանում է այդ գործը սօցիալ-դէմօկրատական թէօրիայի հայեցակէտից։

Այդ թէօրիան իր կօնկրէտ եզրակացութիւններով, որոնք ընդնշմարում են որոշ պրօցէսի ընթացքը, ինչպէս յայտնի է՝ հետեւեալ գլխաւոր դրութիւններին է յանգում.— 1) իր ծաւալով ընդարձակւող կապիտալիստական արտադրութեան ուղեկցում է կազմակերպւած պրօլէտարիատի թւական աճումը, հետեւապէս անխուսափելի ու կարծես մեքենայական ճանապարհով նախապատրաստւում է նրա դիկտատուրան։ 2) Միեւնոյն ժամանակ, խոշոր կապիտալիստական արտադրութիւնը իր զարգացման պրօցէսում կտրուկ կերպով հակադրում է բանւոր դասակարգը կապիտալիստների դասակարգին և այսպիսով չափազանց պարզացնում և իրականացնում է պրօլէտարիատի գիտակցութեան մէջ նրա դասակարգային խնդիրները, նրա համար վերին աստիճանի ակներև կերպով պարզաբանելով ապագայ սօցիալիստական յեղաշրջման փաստական բովանդակութիւնը։ 3) Վերջապէս, կազմակերպելով ազգային արտադրութիւնը հաւաքական աշխատանքի հիմքերի վրա, յարմարեցնելով նրան ոչ թէ առանձին ընտանիքների և փոքրիկ խմբերի կարիքներին, այլ բազմամիլլիօն մասսաների կարիքներին, արտադրութեան կապիտալիստական եղանակը նախապատրաստում է բոլոր անհրաժեշտ նիւթական պայմանները աշխատանքի և ամբողջ արտադրութեան հասարակական կազմակերպութեանը փոխանցնելու համար։

---

[1]) Համաձայն W. Crooks-ի (The Wheat Problems) Անգլիայի սպառած ցորենի 25-%ը արտադրւում է ներսում, իսկ 75%-ը ներմուծւում է։

Այսպէս է այն շատ պարզ, կատարելապէս ամբողջացած ուրւագիծը, կառուցւած առարկայական (օբյեկտիւ) տնտեսական յենարանի վրա։ Այստեղ ամբողջ հասարակական յեղաշրջման հիմնական շարժիչ ուժը հանդիսանում է խոշոր կապիտալիստական արտադրութեան զարգացումը։ Եւ ահա, Անգլիայում այդ զարգացումը կատարւում էր, ըստ երևոյթին, ամենաբարեյաջող պայմաններում և համարեա հասել է իր ծայրագոյն սահմաններին։ Տեսնենք ուրեմն, թէ հետեանքները ինչ դուրս եկան։

Մինչև այժմ մենք դեռ բոլորովին չենք շօշափել կապիտալիստական զարգացման մի խիստ կարևոր կողմը, այսինքն՝ նրան յատուկ միջազգային բնաւորութիւնը։ Եթէ մենք ցանկանում ենք ճիշտ գնահատել և պարզաբանել ժամանակակից խոշոր արտադրութեան կապիտալիստական հասարակական դերը իր իսկական չափերով, ապա ուրեմն մենք պիտի առանձին ուշադրութիւն դարձնենք նրա միջազգային բնաւորութեան վրա։ Նրա ազդեցութեան շատ կողմերը բոլորովին այլ նշանակութիւն են ձեռք բերում իբրև հետեանք հէնց այն հանգամանքի, որ նրա զարգացման բարձրագոյն աստիճաններում նրա գլխաւոր գործունէութեան յենարանը հանդիսանում է այլևս ոչ թէ ազգային, այլ համաշխարհային շուկան, և որ այդ դէպքում նրա շահագործման շրջանը անցնում է իր սեփական հայրենիքի սահմաններից շատ հեռու, տարածւելով ուրիշ երկրների վրա։

Խոշոր արտադրութեան կապիտալիստական միջազգային բնաւորութիւնը, ի հարկէ, ոչ մի կասկածի ենթակայ չէ։ Հէնց այն ձևը, որով նա զարգացել է, նրան ստիպեց շատ շուտով թողնել նեղ-ազգային հողը և համաշխարհային չափեր ընդունել,—ինչպէս այդ գերազանցօրէն ցոյց է տրւած դեռ Կոմմունիստական Մանիֆէստում։

«Խոշոր արդիւնաբերութիւնը ստեղծեց համաշխարհային շուկայ, որ նախապատրաստւած էր Ամերիկայի բացումով։ Համաշխարհային շուկան առաջացրեց առևտրի, նաւագնացութեան, ցամաքային հաղորդակցութեան անչափ զարգացումը։ Սա իր հերթին ազդեց արդիւնաբերութեան ընդարձակման վրա. և այն չափով, ինչ չափով ընդարձակւում էին արդիւնաբերութիւնը, առևտուրը, նաւագնացութիւնը, երկաթուղիները, զարգանում էր և բուրժուազիան. նա բազմապատկում էր իր կապիտալները, դէպի յետին տեղն էր մղում այն դասակարգերը, որոնք միջին դարերից մնացել էին...

«Բուրժուազիան համաշխարհային շուկայի շահագործմամբ արտադրութեանը և սպառմանը աշխարհաքաղաքացիական ձև տուեց։ Ի մեծ ցաւ լետադիմականների, նա ազգային հողը դուրս քաշեց արդիւնաբերութեան ոտքերի տակից։ Դարաւոր ազգային արդիւնաբերութիւնները կամ ոչնչացած են կամ ոչնչանում են։

«Նրանց դուրս են մղում նոր արդիւնաբերութիւնները, որոնց ներմուծութիւնը կենսական հարց է դառնում բոլոր քաղաքակրթուած ազգերի համար. այն արդիւնաբերութիւնները, որոնք մշակում են այլևս ոչ թէ տեղական հում արդիւնքները, այլ հեռաւոր գօտիներինը. այն արդիւնաբերութիւնները, որոնց գործարանային արդիւնքները սպառւում են ոչ միայն երկրի մէջ, այլ միևնոյն ժամանակ և աշխարհի բոլոր մասերում»... և այլն [1])։

Այս ամբողջ ճանապարհը, որով զարգացել է կապիտալիստական արտադրութիւնը, Կոմմունիստական Մանիֆէստում քննւում էր, իր յեղափոխական նշանակութեամբ, միայն հին միջնադարեան հասարակութեան դասակարգերի վերաբերեալ, որոնք բուրժուազիայի կողմից մղեցին երկրորդ տեղը. ապա նա քննւում էր Կոմմ. Մանիֆէստի հեղինակների կողմից համաշխարհային արդիւնաբերական ճգնաժամերի հարցի վերաբերեալ, ճգնաժամերի, որոնք համաձայն սկզբնական հիպօթէզի, պիտի շարունակ աւելի և աւելի մեծ չափեր ընդունէին և տանէին դէպի բուրժուական կազմի անխուսափելի կազմալուծումը։

Բայց կապիտալիստական արդիւնաբերութեան զարգացման այս եղանակը, որ նրա համար համաշխարհային լենարան ստեղծեց, քիչ է գրաւում իր վրա սօցիալ-դէմօկրատական դպրոցի կողմնակիցների ուշադրութիւնը, նրա, կարելի է ասել, ոչնչացնող ազդեցութեան տեսակէտից, որ նա ունի մի որոշ կապիտալիստական երկրի կապիտալիստական զարգացման ստեղծագործող, ձևափոխող դերի վրա, ինչպէս բանւորական մասսաների քաղաքական զօրութեան ուժեղացման խնդրի վերաբերեալ, նոյնպէս և դէպի սօցիալիստական կազմը փոխարկւելու համար նիւթական պայմանների նախապատրաստութեան խնդրի վերաբերեալ։

Նախ և առաջ մենք պիտի մի անգամ էլ յիշեցնենք այստեղ այն սահմանաբաժանումը, որ անհրաժեշտ է անցկացնել այն կապիտալների մէջ, որոնք կուտակւում են բուրժուազիայի ձեռներում՝

---

[1]) Կոմմ. Մանիֆէստ։

կապիտալիստական արդիւնաբերութեան և առևտրի համաշխարհային շուկաների ընդարձակման հետ միաժամանակ։ Մենք պիտի մի անգամ ևս լսենք, որ «մարքսիզմի հայեացակէտից, ժամանակակից հասարակութեան մէջ յեղափոխական ուժը պարունակւում է ոչ թէ առհասարակ կապիտալում, այլ միայն արդիւնաբերական կապիտալում. միայն վերջինս է ներկայացնում այն ուժը, որը նախապատրաստական պայմաններ է ստեղծում արտադրութեան սօցիալիստական եղանակի համար և աշխարհ է բերում այն պրօլետարներին, որոնց պատմական անելիքը նրանումն է, որ իրականացնեն այդ արտադրութեան եղանակը»։ [1])

Բայց եթէ դա այդպէս է, ուրեմն հեշտ է տեսնել, որ մի երկրում, ուրիշ հարստութիւնների շարքում, որ այդտեղի բուրժուազիայի ձեռքումն են կենտրոնանում, արդիւնաբերական կապիտալի յարաբերական չափերի վրա ինչ ահագին ազդեցութիւն կարող է ունենալ այն հանգամանքը, որ բարձրագոյն կապիտալիստական զարգացումը փաստօրէն կարող էր կատարել միայն միջազգային հողի վրա, շարունակ աւելի և աւելի ընդարձակւող համաշխարհային կապտալիստական շահագործման հողի վրա։

«Խոշոր արդիւնաբերութիւնը համաշխարհային շուկայ ստեղծեց, իսկ համաշխարհային շուկան առաջադրեց առևտրի անչափ զարգացումը»։ Այստեղից էլ առաջացել է իւրաքանչիւր զարգացած կապիտալիստական երկրում առևտրական կապիտալի ահագին կուտակումը։ Կապիտալիստական արդիւնաբերութեան զարգացմանն անխուսափելիօրէն ուղեկցում է առևտրական կապիտալի աճումը, բայց այդ վերջինն իր յետևից չէ բերում համապատասխան աճում կազմակերպուած բանւորական բանակի։ Առևտրական վաստակը (շահը прибыль) համաշխարհային շուկայում պայմանաւորուած չէ այն բանով, որ նա որոշ քանակութեամբ նոր բանւորական ձեռքեր է զբաղեցնում, նա պայմանաւորուած է զանազան երկրներում որոշ ապրանքների արտադրութեան արժէքի տարբերութեամբ. իսկ ինչ վերաբերում է մշակողական արդիւնաբերութեան արդիւնքներին, այստեղ վաստակը իւրատեսակ մի ռէնտա է, որ վճարում են աւելի քիչ զարգացած տեխնիկա ունեցող երկրները՝ հետևաբար և կապիտալիստական զարգացման ցածր աստիճանի վրա կանգնած երկրները, յօգուտ ար-

1) Kautsky, «Bernstein und das sozialdemokratische Programm», երես 94։

դիւնաբերօրէն աւելի զարգացած երկրների։ Վերջիվերջոյ, առևտրական վաստակը հանդիսանում է իբրև շահագործման մի ձև, որին ենթարկւում է տնտեսապէս յետամնաց երկրների ազգաբնակութիւնը առաջաւոր արդիւնաբերական երկրների կապիտալիստների կողմից, բայց շահագործման մի այնպիսի ձև, որին չէ ուղեկցում պրոլէտարիատի թւի աճումը կապիտալիստների իրենց հայրենիքում։ Այդ պատճառով էլ Կաուցկին ասում է, որ առևտրական կապիտալը, հակառակ արդիւնաբերականին, աշխարհ չի բերում նոր զօրաբանակներ յեղափոխական պրոլէտարիատի, որի թւական չափերից կախւած է ամենից առաջ իր պատմական միսիան իրագործելու հնարաւորութիւնը։

Այսպիսով, բոլոր այն հարստութիւնները, որոնք կուտակւում են բուրժուազիայի ձեռքին շնորհիւ առևտրական վաստակի, և բոլոր այն քաղաքական ազդեցութիւնը, որ բուրժուազիան իր համար ապահովում է շնորհիւ այդ հարստութիւնների նրա ձեռքերում կուտակւելուն, այս բոլորը չի հաւասարակշռւում ոչ մի աճեցողութեամբ այն ստեղծագործող կազմակերպիչ ուժի չափերի, որ ստեղծւում է արդիւնաբերական կապիտալի աճմամբ և արտադրութեան կապիտալիստական եղանակի զարգացմամբ։ Եթէ մենք որևէ կապիտալիստական երկիր անդամազատենք իրար թշնամաբար հակադրած երկու բանակների՝ բուրժուական և սոցիալիստական, ապա ուրեմն՝ առևտրական կապիտալի աճմամբ պայմանաւորւած հարստութիւնների կուտակումը բուրժուազիայի ձեռքում անխուսափելիօրէն պիտի մեծացնի իրեն՝ բուրժուազիայի կոնտինգէնտը և մեծացնի նրա կողմնակիցների թիւը, որոնց նա գրաւում է ի ծառայութիւն իր հարստութիւնների, կամ թէ կաշառում է իր մարդասիրական ձեռնարկներով, բայց նա ամենափոքր աստիճանով անգամ ընդունակ չէ ազդելու այդ երկրում հակառակ՝ սոցիալիստական բանակի կողմնակիցների թւի աճման վրա։ Այսպիսով կապիտալիստական զարգացման այն ամբողջ կողմը, որը վերաբերում է «առևտրի անչափ զարգացման», որ անխուսափելօրէն առաջանում է, ըստ Կոմմ. Մանիֆէստի, խոշոր արդիւնաբերութեան զարգացմամբ, հանդիսանում է իբրև անխուսափելի և շարունակաբար աճող արգելք այն պրոցէսում, որը նախապատրաստում է մի կապիտալիստական երկիր սոցիալիստական յեղաշրջման համար՝ նրանում խոշոր կապիտալիստական արտադրութեան զարգացման օգնութեամբ։

Բայց, բացի առևտրական կապիտալից, ոչ-արդիւնաբերակա-

նի կաթէգօրիային է պատկանում նաև դրամական կապիտալը։ Առևտրական կապիտալի նման, արդիւնաբերական երկրներում դրամական կապիտալի աճումը անխուսափելիօրէն առաջանում է խոշոր կապիտալիստական արտադրութեան զարգացման պրօցէսից։ Քանի որ կապիտալիստական զարգացման պրօցէսը չի կարող փակուել մի երկրի սահմաններում, ապա ուրեմն «իր ապրանքների շարունակ լայնացնող վաճառման կարիքը քշում է բուրժուազիային դէպի ամբողջ երկրագնդի երեսը», այն ինչ նոր շուկաներ ձեռք բերելը նրա համար միշտ որոշ դժուարութիւններ է ներկայացնում, և հետևաբար՝ նոյն ինքն արտադրութեան կապիտալիստական եղանակի լայնացումը երբէք չի կարող տեղի ունենալ առանց կանգ առնելու, եթէ ուզենան արտադրութիւնը լայնացնել այն չափով, ինչ որ ստացւում է արդիւնաբերական փաստակի տարեկան յաւելումից՝ հանած այնքան, որքան կլանում են ձեռնարկողների անձնական ծախսերը։ Ահա թէ ինչու արտադրութեան կապիտալիստական եղանակի զարգացման հետ միասին արդիւնաբերական շրջանառութիւնից միշտ զանազանւում են ազատ դրամական կապիտալներ այն չափով, որը համապատասխանում է որոշ երկրի ամբողջ արդիւնաբերական կապիտալին։ Այնպիսի արդիւնաբերօրէն զարգացած երկրներում, ինչպէս Անգլիան է, այդ դրամական կապիտալները հասնում են, ինչպէս յայտնի է, ահագին չափերի, միաժամանակ նրանց անընդհատ աճումը պայմանաւորուած է նոյնպէս նրանով, որ նրանք իրենց համար տեղ են գտնում օտարերկրեայ արդիւնաբերական ձեռնարկութիւնների և պետական պարտքերի մէջ, և հետևաբար՝ առևտրական կապիտալների պէս, իրենց տէրերին վաստակ են տալիս, որը կապուած չէ նրանց սեփական երկրի արտադրութեան կապիտալիստական արդիւնաբերութեան լայնացման հետ։

Ակներև է, որ ի դէմս այս յաւելաճին դրամական կապիտալների մենք ունենք դարձեալ հարստութիւնների այնպիսի ձև (հարստութիւնների, որոնք կուտակւում են բուրժուազիայի ձեռքին և մեծացնում նրա քաղաքական ազդեցութիւնը), որին չի ուղեկցում համապատասխան աճումը կազմակերպուած բանուորական բանակի որոշ կապիտալիստական երկրում։ Այդ հարստութիւնների համար իբրև ըսկզբնական աղբիւր ծառայում է որոշ երկրի կապիտալիստական շրջանառութիւնից զատուած մի մասը արդիւնաբերական կամ առևտրական կապիտալի, իսկ նրանց յետագայ աճումը պայմանաւորուած է նրանով, որ այդ երկրների կապիտալիստները շահագործում են ուրիշ շատ երկրների ազգաբնակութիւնը։ Այսպիսով, այս դէպքումն էլ

արդիւնաբերօրէն զարգացած երկրի կապիտալիստական դասակարգը
տարածում է իր արդիւնաբերական և վաշխառուական գործառնու-
թիւնները նրա սահմաններից շատ դուրս, այդ կերպ անսահման-
մեծացնելով իր տնտեսական հզօրութիւնը, որը նրա ձեռքում հան-
դիսանում է յարաճուն ուժ այդ երկրի բանւորական դասակարգի
վերաբերմամբ։ Կապիտալիստական զարգացման դերը, ինչքան որ-
նա արտայայտւում է դրամական կապիտալի աճման մէջ, այստեղ
կարծես բաժանւում է երկու առանձին մասերի.—Նրա ամբողջ
յեղափոխիչ ազդեցութիւնը, պայմանաւորւած բանւորական մասսա-
ների շահագործմամբ և ճնշմամբ, փոխադրւում է դէպի միջազգային
ասպարէզը և գուցէ իր կողմից նպաստում է որևէ տնտեսապէս ա-
ւելի յետամնաց երկրում քաղաքական և սօցիալիստական ճգնաժա-
մերի նախապատրաստելուն, իսկ կապիտալիստական զարգացման
բոլոր բացասական կողմը, որ արտայայտւում է նրանում, որ բուր-
ժուազիայի տնտեսական հզօրութիւնն աճում է, կարողութիւն-
ունեցող անհատների թիւը բազմանում և հող է պատրաստւում ա-
մէն տեսակ բուրժուա-դէմօկրատական կօմպրօմիսների համար, այս
ամբողջ բացասական կողմը կենտրոնանում է որոշ կապիտալիս-
տական երկրի ներսում։ Հեշտ է հասկանալ, թէ ինչ հետևանքներ
պիտի ունենայ սա գործի դրութեան վրա մի այնպիսի արդիւնա-
բերօրէն զարգացած երկրում, ինչպէս օրինակ Անգլիան է, որտեղ
պրօլէտարիատը ստիպւած է կռիւ մղել ոչ միայն արդիւնաբերական,
այլև շարունակ աճող առևտրական և դրամական բուրժուազիայի
ուժերի հետ և հետևաբար յաղթել կրկնակի և եռակի դիմադրու-
թեան, որ ցոյց են տալիս սօցիալիստական շարժմանը կապիտալիս-
տական կազմի կազմակերպւած պաշտպանները։ Աշխարհի բոլոր
ծայրերից Անգլիական կապիտալիստների ձեռներն են հոսում շարու-
նակ նոր և նոր դրամական աղբիւրներ, որոնք նրանց թոյլ են
տալիս մի քանի զիջումներ անել կազմակերպւած բանւորական
մասսաների պահանջներին, բաւականանալով արդիւնաբերական
վաստակի աւելի փոքր տոկոսով, և ընդարձակել շրջանը այն
կապիտալիստական հասարակական յարաբերութիւնների և հիմ-
նարկութիւնների (Վարձկան մամուլ, ընտրողական կաշառք, բարե-
գործութիւն, ծառաներ, վարձկան զօրք և այլն) որոնք ամրաց-
նում են նրանց կապիտալիստական դիրքերը սօցիալիզմի հետ-
մղած կռւում։ Այսպիսով, և այն բանում, ինչ որ վերաբերում է
դրամական կապիտալներին, հէնց միջազգային շահագործման վրա
յենւող կապիտալիստական զարգացման համաշխարհային չափերը

որոշ երկրի կապիտալիստներին հնարավորություն են տալիս հասնելու այնպիսի հսկայական հարստությունների կուտակման, արդյունաբերական բանվորների միևնույն կոնտինգենտով (քանակով), որը վերջիններիս համար հանդիսանում է մի դժվար հաղթահարելի արգելք, երբ նրանք ձգտում են պատրաստել կապիտալիստական կազմը։

---

Վերջապես մեզ ասում են, որ կապիտալիստական արդյունաբերության զարգացումը պիտի անհրաժեշտորէն նախորդ հասարակության սոցիալիստական կազմակերպությանը նաև այն պատճառով, որ միայն նա է ընդունակ նախապատրաստելու նյութական պայմաններ դէպի սոցիալիստական կազմը փոխանցնելու համար։ Միևնույն ժամանակ նյութական պայմանների այդ նախապատրաստությունը կայանում է նրանում, որ խոշոր կապիտալիստական արդյունաբերությունը կազմակերպում է ամբողջ ազգային արտադրությունը հասարակական աշխատանքի հիմքերի վրայ և այնպիսի չափերով, որոնք սահմանած են ոչ թէ առանձին ընտանիքների կամ խմբերի կարիքներին բավարարություն տալու համար, այլ ամբողջ ազգաբնակության։

Բայց հեշտ է նկատել, որ արտադրության կապիտալիստական եղանակի հէնց միջազգային հիմքն է, որ ազգային արտադրության այս ամբողջ կազմակերպությանը, նրա զարգացման ազդեցության տակ, այնպիսի բնավորություն է հաղորդում, որ ազգային արտադրությունը կըհանդիսանար կատարելապէս չըհամապատասխանող որոշ երկրի իսկական նյութական պահանջներին, եթէ նա իր քաղաքական և ոգեկան պայմաններով արդէն պատրաստ լինէր դէպի սոցիալիստական կազմ անցնելու համար։

«Բուրժուազիան, իր շահագործմամբ արտադրությանը համաշխարհային շուկայի և սպառմանը աշխարհաքաղաքացիական (կոսմօպոլիտական) ձև է հաղորդել»։ Եւ որքան աւելի առաջ գնայ որոշ երկրի կապիտալիստական զարգացումը, որքան աւելի նրա մշակողական արդյունաբերության գլխաւոր ճիւղերը մօտենում են համաշխարհային չափերի, այնքան աւելի նրանք աշխարհաքաղաքացիական ձև են ընդունում, այնքան պակաս են գոհացնում նոյն այդ երկրի ազգաբնակության տնտեսական պահանջները։ Այն ժամանակ, երբ Անգլիայի ճոթեղէնի գործարանները և մետալաձուլարանները ընդունակ են ամբողջ Եւրօպային կտորներ և

մետալեղէններ մատակարարել, նոյն այդ Անգլիան անընդունակ կըլինէր, ազգային արտադրութեան իր ներկայ կազմակերպութեամբ, ինքն իրեն կերակրել երեք կամ չորս ամիս տարուայ մէջ։ Հարցնում ենք, ինչ կանէր Անգլիան իր գործարաններով և մեքենաներով, եթէ ցանկանար վերջացնել իր արտադրութեան կապիտալիստական կազմակերպութիւնը և իր ազգային տնտեսութիւնը դնել համաշխարհային շուկայի արդիւնաբերական մրցումից և ճգնաժամերից դուրս։ Ակնյայտնի է, որ նա կամ պիտի նորից վերակազմէր իր ազգային արտադրութեան ամբողջ նիւթական կարգաւորումը, կամ թէ չէ բուրժուական կարգը վերջացնելը յետաձգէր մինչև այն ժամանակ, մինչև որ վերջինս կարողանար կատարուել այլևս ոչ թէ ազգային, այլ միջազգային սօցիալիստական յեղաշրջման չափերով։ Քանի որ զարգացած կապիտալիստական երկրների ամբողջ տնտեսական կազմակերպութիւնը կառուցուած է՝ ամենևին նկատի չառնելով ազգաբնակութեան իսկական կարիքները—որը, և այսպէս կոչուած արդիւնաբերական անիշխանութեան գլխաւոր պատճառն է հանդիսանում,—ապա ուրեմն վերին աստիճանի տարօրինակ է այն միտքը, որ նոյն այդ տնտեսական կազմակերպութիւնը, որը ամենևին չէ յարմարուել ազգաբնակութեան տնտեսական կարիքներին, կարող է իբրև պատրաստի շրջանակ ծառայել փոխանցնելու համար դէպի ազգային արտադրութեան կարգաւորուած սօցիալիստական կազմակերպութիւնը։ Հեշտ է նկատել, որ աւելի շատ ձեռնտու պայմաններում են գտնւում այս կողմից այն աւելի յետամնաց, տնտեսական զարգացման տեսակէտից, կապիտալիստական երկրները, որոնք դեռ ընդունակ չեն իրենց արտադրութեամբ համաշխարհային շուկայի ընդարձակ շրջանները ընդգրկել, այլ հարկադրուած են բաւականանալ գլխաւորաբար ներքին վաճառահանութեամբ։ Այսպիսի երկրների տեխնիկապէս աւելի պակաս կատարեալ արդիւնաբերական կազմակերպութիւնը իր նիւթական պայմաններով աւելի շատ է յարմարուած փոխանցնելու դէպի ազգային արտադրութեան ընդհանուր կարգաւորուած կազմակերպութիւնը, միևնոյն ժամանակ, նրա տնտեսական յետամնացութեան համապատասխանող այն առևտրական և դրամական կապիտալների ոչ մեծ չափերը, որոնք կենտրօնանում են նրա բուրժուազիայի ձեռքում, աւելի փոքր արգելք են ներկայացնում այդպիսի փոխանցման համար նոյնպէս և քաղաքական պայմանների կողմից, հասարակական ուժերի որոշ բաշխման կողմից։

*
* *

Այսպէս են, ամենաընդհանուր գծերով, այն տնտեսական դրութեան գումարները, որ ստեղծւում է այնպիսի կապիտալիստական երկրներում, որոնք համարեա ամբողջապէս պրոլէտարացած գիւղացիութիւն ունեն, որոնց գիւղատնտեսական արդիւնաբերութիւնը համարեա նւազագոյն չափերի է հասած։ Եթէ հակադիր տիպի կապիտալիստական երկրներում, կապիտալիստական արտադրութեան բոլոր առաւելութիւնները աւելի կամ պակաս անդամալուծւում են այն հանգամանքից, որ բուրժուական հասարակութեան սոցիալիստական ձևափոխութեան պրոցէսը, որը նրանցում նախապատրաստւում է կապիտալիստական զարգացման ընդգրկած սահմաններում, չի տարածւում որոշ կապիտալիստական կազմի բաւականաչափ շրջանների վրա, ապա ուրեմն այստեղ մենք մեր առջև ունենք մի բոլորովին հակառակ բան.— մենք տեսնում ենք, որ միաժամանակ, երբ կապիտալիստական զարգացումը, իր ամենաբարձր աստիճաններում, տիրապետում է ազգային արտադրութեան բոլոր շրջաններին, նա անխուսափելիօրէն անցնում է իր երկրի սահմաններից շատ հեռու, տարածւում է առևտրական, արդիւնաբերական կամ ֆիսկալ շահագործման ձևով ուրիշ երկրների բանւորական մասսաների վրա և որոշ երկրի բուրժուական բանակի ձեռքը կուտի այնպիսի զօրաւոր միջոցներ է տալիս ընդդէմ սոցիալիստական շարժման,— բուրժուազիայի կուտակած հարստութիւնների ձևով,— որոնցով կրկին անդամալուծւում է բաւական չափով յեղափոխիչ ազդեցութիւնը այդ կապիտալիստական զարգացման, որը կենտրօնացած է արդիւնաբերական պրոլէտարիատի կազմակերպւած մասսաներում։

Այս դէպքում կապիտալիստական զարգացման յեղափոխիչ ազդեցութիւնն անդամալուծւում է, նոյն այդ որոշ կապիտալիստական երկրի վերաբերմամբ, իբրև հետևանք այն բանի, որ նա ընդունում է միջազգային, համաշխարհային բնաւորութիւն, միաժամանակ՝ այդ յեղափոխիչ ազդեցութեան բաւական զգալի մասը ուրիշ երկրներին է բաժին ընկնում, ցրւում է ամբողջ աշխարհի երեսին, իսկ իբրև բաժին այդ կապիտալիստական երկրի ընկնում է միայն կապիտալիստական զարգացման այն կողմը, որը մեծացնում է բուրժուական դասակարգի զօրութիւնը։

Մենք արդէն տեսանք, որ կապիտալիստական զարգացման

գլխաւոր կենտրոններում կապիտալիստական զօրութեան՝ այս կենտրոնացումը արդէն իր վրա է գրաւել Կաուցկու ուշադրութիւնը, որը մինչև անգամ կարծիք է յայտնել, թէ Անգլիան դադարում է կապիտալիզմի իսկական ներկայացուցիչ լինել, և համեմատում էր նրան հարուստների այնպիսի արհեստական կուտակման տեղերի հետ, ինչպիսին են Մօնտէ-Կարլօն կամ Բերլինի Թիրգարտէնեան քաղաքամասը։

«Ծիծաղելի կլինէր, ասում է նա, եզրակացութիւն անել հարուստների թւի աճման մասին՝ ինչպէս մի օրէնքի արտադրութեան կապիտալիստական եղանակի, այն թւերի հիման վրա, սրոնք վերաբերում են այդ հարուստների աթոռանիստ վայրերին... Որոշ արտադրութեան եղանակի օրէնքն ուսումնասիրելու համար մենք պիտի ուշադրութեան առնենք նրա ընդգրկած ամբողջ շրջանը և ոչ թէ միայն նրա մի մասնիկը»։ [1])

Եւ որովհետև այդպիսի շրջան, որին ընդգրկում է որևէ արդիւնաբերական երկրի կապիտալիստական զարգացման պրօցէսը, ներկայանում է համաշխարհային շուկայի և միջազգային շահագործման անսահման լայնացող շրջանը, ապա ուրեմն ակներև է, որ այս պատճառաբանութիւնը բերելով ի պաշտպանութիւն սօցիալիզմի սօցիալ-դէմօկրատական թէօրիայի, Կաուցկին ինքը նրան մահացու հարւած է տալիս։ Ակներև է, որ այն հայեցակէտից, որի վրա կանգնում է այստեղ Կաուցկին, սօցիալիզմի այն թէօրիան, որի համաձայն՝ բուրժուական հասարակութեան սօցիալիստական ձևափոխման համար անհրաժեշտ պայմանները նախապատրաստւում են արտադրութեան կապիտալիստական եղանակով, պէտք է դիտել ոչ թէ իբրև մի թէօրիա սօցիալիստական յեղաշրջման ամենաշատ զարգացած արդիւնաբերական երկրների ներսում, այլ իբրև միաժամանակեայ համաշխարհային յեղաշրջման թէօրիա, որով և, նկատելով նրա այդ անընդգրկելի չափերը, բուրժուական կարգի վերջացնելու ժամը և սօցիալիստական պահանջների իրագործումն իսկապէս որ տեղափոխւում է դէպի մի անորոշ հեռու ապագայ։

* * *

Այսպիսով վերադառնալով այն ելակէտին, որից մենք վերլուծում էինք գիտական սօցիալիզմի սօցիալ-դէմօկրատական թէօ-

---

[1]) Bernstein und das sozialdemokratische Programm, երես 93

*րիան, մենք պիտի այն եզրակացութեան գանք, որ այդ թէօրիան, ինչպէս իր փիլիսոփայական հիմնաւորմամբ, նոյնպէս և իր տնտեսական եզրակացութիւններով, կիրառելի չէ մի սօցիալիստական շարժման համար, որը զարգանում է մի որոշ կապիտալիստական օրգանիզմի սահմաններում, մի որոշ բուրժուական հասարակութեան շրջանակներում։*

*Նա կիրառելի չէ ըստ իր փիլիսոփայական հիմնաւորման, որովհետև այն յաջորդական աստիճանները, որոնց սահմաններում, համեմատ այս փիլիսոփայական ուրուագծի, պիտի կատարուի կապիտալիստական հասարակական յարաբերութիւնների դիալէքտիկական ձևափոխութիւնը, կամ չեն ընդգրկում որոշ կապիտալիստական հասարակութիւնը ամբողջապէս, կամ նրան իբրև մի առանձին բաղկացուցիչ մասնիկ ներս են ձգում դէպի հասարակական ձևափոխութեան համաշխարհային պրօցէսը, որ պահանջում է ոչ միայն այդ կապիտալիստական հասարակութեան նախապատրաստութիւնը սօցիալիստական յեղաշրջման համար, այլև բոլոր միւս դրա հետ տնտեսապէս կապուած երկրների։*

*Նոյն կերպ էլ, սօցիալ-դէմօկրատական դպրոցի բոլոր տնտեսական եզրակացութիւնները, որոնք կօնկրէտ բովանդակութիւն են դնում բացասման եղանակով զարգացման այս վերացական ֆօրմուլայի մէջ, ինչպէս օրինակ այն եզրակացութիւնը՝ թէ կապիտալիստական զարգացումն ազդում է դասակարգային գիտակցութեան զարգացման վրա բանւոր դասակարգի մէջ, կամ ազդում է սօցիալիստական յեղաշրջման նիւթական պայմանների նախապատրաստութեան վրայ,—այս բոլոր եզրակացութիւնները, ինչպէս տեսանք, ջախջախւում են, զարնւելով մեր ցոյց տուած անհամապատասխանութեանը՝ կապիտալիստական զարգացման շրջանակների և որոշ բուրժուական հասարակութեան շրջանակների միջև, այդ պատճառով էլ միայն այն մասնակի նշանակութիւնն ունեն, որ նրանց վերաբերմամբ ընդունում է նաև սօցիալիզմի սօցիալ-յեղափոխական դպրոցը։*

## II

*Այսպիսով, մենք այժմ տեսնում ենք, թէ ինչումն է տարաձայնութեան էութիւնը մեր քննած երկու սօցիալիստական հոսանքների միջև—նա յանգում է դէպի կապիտալիստական կազմը*

ունեցած տարբերութեան, որը բղխում է հայեացքների տարբերութիւնից ժամանակակից կապիտալիստական արդիւնաբերութեան դերի վերաբերմամբ։

Մինչդեռ սօցիալ-յեղափոխականների կուսակցութիւնը կապիտալիզմի մէջ տեսնում է միայն մի որոշ ձև բանւոր դասակարգի ստրկացման, իսկ կապիտալիստական արտադրութեան զարգացման մէջ՝ միայն այն հողը, որի վրա անհրաժեշտօրէն պիտի զարգանայ սօցիալիստական շարժումը, սօցիալ-դէմօկրատների կուսակցութիւնը կապիտալիզմի մէջ տեսնում է ոչ միայն ստրկացման մի ձև, այլ նոյնպէս և բանւոր դասակարգի ազատագրութեան գլխաւոր գործիքը, իսկ կապիտալիստական արդիւնաբերութեան զարգացման մէջ տեսնում է այն ճանապարհը, որով պիտի գնայ այս ազատագրութիւնը։

Մարքսի սկզբնական հիպօթէզից տարբեր՝ ժամանակակից սօցիալ-դէմօկրատները բուժուական կազմի անկումը կապում են ոչ թէ այն պայմանների հետ, որոնց ներկայութեամբ յետագայ կապիտալիստական զարգացումը այլևս անկարելի պիտի լինի,—ինչպէս այդ բանը մենք գտնում ենք Կոմմ. Մանիֆէստի մէջ, որտեղ բուրժուազիայի անկումը կապում են արդիւնաբերական ճգնաժամերի և տնտեսական կատաստրօֆների հետ,—այլ ընդհակառակը, ժամանակակից ուղղափառ մարքսիզմի մէջ բուրժուական կազմի այդ անկումը կապում են կապիտալիզմի յաջողակ և անարգել զարգացման ժամանակաշրջանի հետ, հետևաբար և՝ բուրժուական կազմի ամենաշատ ծաղկման ժամանակաշրջանի հետ,—քանի որ հէնց կապիտալիզմի զարգացումն է կազմում նրա հիմնական կենսական նեարդը, նրա հզօրութեան գլխաւոր աղբիւրը։ Համաշխարհային արդիւնաբերական ճգնաժամի այն մօմէնտը, որը, թէօրիապէս, պիտի վաղ թէ ուշ տեղի ունենայ, քանի որ արդիւնաբերական շահագործման շրջանը շարունակ լայնանում է,—ժամանակակից մարքսիստների համար կոչւում է անորոշ հեռւում և նանց համար ոչ մի վճռող դեր չի խաղում։

«Անհրաժեշտ պարբերական վերակազմութիւնը—ասում է Կաուցկին—ընդնշմարել է տալիս այն վերջին սահմանը, մինչև որտեղ կապիտալիստական ռէժիմը կարող է իր գոյութիւնը պաշտպանել, բայց դա դեռ ամենևին չի նշանակում, որ նա ընդնշմարել տար նրա կործանման պատճառը»։ Կաուցկին մինչև անգամ «հաճոյքով խոստովանում է», որ «կարելի է առհասարակ կասկածել, թէ արդեօք երբևիցէ, այդ կրիտիքական մօմէնտը տեղի

կունենայ, քանի որ դասակարգային կռիւը կարող է կապիտալիստական արտադրութեան եղանակի տապալմանը հասցնել աւելի վաղ, քան արտադրութեան այդ եղանակը կմտնի իր քայքայման ժամանակաշրջանը»։ [1])

Այսպիսով, ժամանակակից մարքսիստների մօտ խօսքը ոչ թէ կապիտալիստական կազմի անկման ժամանակաշրջանի մասին է, այլ ծաղկման ժամանակաշրջանի, երբ նա անարգել ընդլայնում է իր տիրապետութեան սահմանները։ Եւ մենք գիտենք, որ սօցիալ-դէմօկրատական դպրոցի կողմնակիցները մինչև անգամ անհրաժեշտ են համարում, կապիտալիզմի հետ աւելի յաջողակ կռւի շահը աչքի առաջ ունենալով, նրա համար ապահովել հնարաւորութիւն՝ անարգել և յաջողակ զարգանալու։

Այսպէս, 1895 թւին Բրէսլաւի պարտայտագի ագրարային մասնաժողովի զեկուցանողը, Կւարկը, միքանի ագրարային պահանջների պաշտպանութեանը նախադրեց հետեւեալ հանդիսաւոր յայտարարութիւնը,—«Մեր, իբրև սօցիալ-դէմօկրատական կուսակցութեան, գոյութեան իրաւունքը հաստատուն կըկանգնի կամ կըերերւի կախուած լինելով այն բանից, թէ արդեօք մենք անկողտողդ կըպաշտպանենք այն դրութիւնը, որ տնտեսական զարգացումը ինքնըստինքեան (ընդգծ. մերն է) պիտի յանգի ամեն տեսակ շահագործական կապիտալի մասնաւոր սեփականութեան վերացման, և որ միայն այդ զարգացումը պաշտպանելով մենք ապահովում ենք կուլտուրայի յառաջախաղաց ընթացքը» [2])...

Նոյնքան որոշ, եթէ ոչ աւելի կաթէգօրիկ յայտարարութիւն արեց Բէբէլը նոյն սօցիալիստական կօնգրէսում նոյնպէս ագրարային մասնաժողովի առաջարկած յաւելումներին կուսակցական ծրագրի վրա։

«Ես մեր ագրարային նախագծին հետեւեալ երեք պահանջներն եմ դրել—ասում էր Բէբէլը.—առաջինը, որ նա հասարակութեան կապիտալիստական զարգացումը չը խանգարի, (ընդգծ. մերն է) երկրորդը, որ նա չի հակասի մեր կուսակցութեան սկզբունքներին, և երրորդը, որ նա չի ծանրաբեռնի բանւոր դասակարգը յօգուտ հողատէ-

---

[1]) «Berntsein nud das sozialdemokratische Programm», երես 142—145։

[2]) «Protokoll uler die Verhandlungen des Parteitages, abgehalten zu Breslau», երես 100։

Ֆերրի։ [1]) Բէբէլի առաջադրած առաջին պահանջը բաւական մըկայում է ինքն իր համար։

Յիշենք վերջապէս Ադլերի խօսքերը Վիէննայի սոցիալիստական կօնգրէսում 1901 թւին—«. . . Ես ուզում էի իմ ծրագրի նախագծում մտցնել նաև այն միտքը, որ մենք պարտաւոր ենք պաշտպանել արտադրողական ուժերի տեխնիքական զարգացումը և աճումը, որքան որ նրանք նախապատրաստում են սեփականութեան ընկերականացած ձևերի հոգեկան և նիւթական պայմանները, որ մենք պիտի այդ զարգացման ապասին լինենք, որ այնտեղ, ուր գործը այդ նախնական պայմաններին է վերաբերում, մենք պիտի կատարեալ գիտակցօրէն օգնենք նրանց արագ առաջ գալուն»։ [2])

Այսպիսով, ոչ մի կասկած չըկայ, որ ժամանակակից սոցիալ-դէմօկրատիան բանւոր դասակարգի ազատագրութիւնը կապում է ոչ թէ կապիտալիստական կազմի քայքայման ժամանակաշրջանի, այլ նրա ծաղկման ժամանակաշրջանի հետ. նա կապիտալիստական արդիւնաբերութեան զարգացման վրա նայում է, իբրև մի ճանապարհի վրա, որ տանում է դէպի այդ ազատագրութեան, հետևաբար և, սոցիալիստական շարժումը և կապիտալիստական զարգացումը, նրա հասկացողութեամբ, ոչ թէ բաղխւում են իբրև իրար թշնամի երկու հոսանքներ, այլ ընդհակառակը, մի տեսակ ձուլւում են մի պատմական պրօցէսում,—գոնէ որոշ պատմական ժամանակաշրջանի վերաբերմամբ։ Բայց հեշտ է տեսնել, որ դէպի կապիտալիստական կարգն ունեցած այդ վերաբերմունք չի կարող իր կնիքը չըդնել դասակարգային կռւի դնելակերպի վրա։ Դասակարգային կռիւը, իր իսկական յեղափոխական նշանակութեամբ, ենթադրում է շահերի անհաշտելիութիւն, և բացակայութիւն այն ընդհանուր հողի, որ իրար հետ կապէր կռւող կողմերը։ Այնինչ, կապիտալիստական զարգացման ժամանակաշրջանի վերաբերմամբ, սոցիալդէմօկրատիայի և կապիտալիզմի միջև մի տեսակ շահերի ընդհանրութիւն է հաստատւում, որ բղխում է միատեսակ վերաբերմունքից դէպի այն ամենը, ինչ որ վերաբերում է կապիտալիստական արդիւնագործութեան զարգացման։ Ժամանակակից սոցիալդէմօկրատիայի աչքում կապիտալիստական արդիւնագործութեան այս զարգացումը հանդիսանում է իբրև գրա-

---

[1]) Նոյն տեղում, երես 117։

[2]) Protokoll, երես 104 (ընդգծումները իսկականումն են)։

ւական քանւոր դասակարգի ազատագրութեան. բայց միևնոյն ժամանակ կապիտալիստական արդիւնագործութեան այս զարգացման հետ անշուշտ կապուած են բուրժուազիայի ամենակենսական շահերը. այսպիսով երկու անհաշտ թշնամիների միջև մի որոշ ժամանակ մի ընդհանուր հող է հաստատւում, և այն էլ ոչ թէ որևէ փոքր, երկրորդական հարցի վերաբերմամբ: Մի որոշ ժամանակաշրջանի ընթացքում այս ընդհանուր հողը, սօցիալդէմօկրատիայի կարծիքով անհրաժեշտ համարուած արդիւնաբերական զարգացման սահմաններում, չի կարող, իհարկէ, չազդել հէնց դասակարգային կռւի բնաւորութեան վրա՝ նրա և բուրժուազիայի միջև, և մենք գիտենք, որ նա իսկապէս որ սահմանափակում է այդ կռիւը, նրան իջեցնում է մինչև տնտեսական բարենորոգումների չափերը որոնք կապիտալիստական արդիւնագործութեան յառաջայ պրօգրէսի հետ միատեղւում են, մինչև քանւորական օրէնսդրութեան չափերը, որը իրագործելի է գոյութիւն ունեցող սօցիալական կազմի շրջանակում: Սօցիալդէմօկրատիայի այս իւրատեսակ դաշնը կապիտալիստական կազմի հետ, դասակարգային կռւի դնելակերպում այս կօմպրօմիսը, այս անկասկածելի օպօրտունիզմը՝ յեղափոխական սօցիալիզմի պահանջների տեսակէտից, հանդիսանում են իբրև տրամաբանական եզրակացութիւն սօցիալդէմօկրատական դպրոցի ամբողջ թէօրիական կառուցուածքից և այս եզրակացութիւնը գրուած է, ինչպէս յայտնի է, նրա օրէնսգրքում նւազագոյն ծրագրի ստորաբաժանման մէջ. և ոչ միայն գրուած է նրա օրէնսգրքում, այլև սրբագործւած է բազմամեայ գործադրութեամբ արևմտեան-եւրոպական սօցիալդէմօկրատական կուսակցութիւնների զարգացման պատմութեան մէջ:

Ի հարկէ տարօրինակ կը լինէր, որ մենք պատասխանատու դարձնէինք արևմտեան Եւրոպայի ամենաշատ զարգացած արդիւնաբերական երկրներում պրօլէտարիատի ժամանակակից դասակարգային կռւի այսպիսի դնելակերպի համար,—դասակարգային կռւի, որ բացասում է մինչև անգամ յեղափոխականութեան ստւերը բուրժուազիայի վերաբերմամբ,—արևմտեան-եւրոպական սօցիալիստական կուսակցութիւնների ղեկավարներին և արևմտեան-եւրոպական սօցիալդէմօկրատական կուսակցութիւնների ծրագիր կազմողներին: Մենք կարող ենք բացատրել այդպիսի ուղղութիւնը, որ ընդունել է բազմամիլիօն քանւորական մասսաների ահագին շարժումը շատ լայնածաւալ պետութիւնների մէջ, միայն ընդհանուր և շատ զօրաւոր պատճառներով, որոնք անհատական կամքի և անհատական մտաւոր

տրամադրութեան սահմաններից շատ այն կողմն են անցնում։ Որոշ պատմական պարագաներում ընդհանուր սօցիալական պայմանների ուժը կարող է այնքան մեծ լինել, որ նա հպատակեցնում է իրեն ծրագրային պահանջները և թէօրիական եզրակացութիւնները մինչև անգամ այն սօցիօլօգիական դպրոցների, որոնք յաւակնութիւն ունին գերազանցապէս առարկայական (օբեքտիւ) համարւելու, —և ահա նոյն այս տեսակի անյաղթելի երկրի ուժը հպատակեցրեց իրեն գիտական սօցիալիզմի սօցիալդէմօկրատական դպրոցի ծրագրային պահանջները և եզրակացութիւնները։

Նրա պաշտամունքը կապիտալիստական զարգացման, նրա խոնարհւելը ժամանակակից արդիւնագործութեան յեղափոխական յատկութիւնների առաջ ոչ այլ ինչ է, եթէ ոչ խոնարհւել փաստի ուժի առաջ։ Մենք տեսանք, որ Բէբէլը, Վիկտոր Ադլէրը և ուրիշները, արդիւնաբերական կեանքին միջամտելու ամեն մի գործ կապիտալիստական արդիւնագործութեան յաղթարեր ընթացքին արգելք լինելու նպատակով, կըհամարէին դաւաճանութիւն դէպի իրենց կուսակցական ծրագիրը։

Բայց բաւական է միայն հարց տալ, թէ արդեօք ճշմարտութեան սահմաններու՞մ կը լինէր, որ ամենաշատ զարգացած արդիւնաբերական երկրների սօցիալիստական կուսակցութիւնները խանգարէին այդ յաղթարեր ընթացքին,—որ պատասխանը ստացւի բացասական։ Այն երկրում, ուր յաջողակ կապիտալիստական զարգացման պայմանները հրապարակում կան, պատմութեան ընթացքն է նրանց տալ, այնտեղ այդ զարգացումը իսկապէս որ անյաղթելի տարերային ուժ էր հանդիսանում։ Մենք կարող ենք մերժել գոյութիւնը ընդհանուր սօցիալիստական օրէնքի, որով իւրաքանչիւր երկիր ենթարկւելիս լինէր արդիւնաբերական զարգացման անյաղթելի ուժին, բայց մենք չենք կարող այդ անյաղթելի ուժը մերժել այնտեղ, ուր հրապարակի վրա կան դրա համար անհրաժեշտ բոլոր պատմական պարագաները։ Եւ ահա այնպիսի երկրներում, ինչպէս Անգլիան կամ Գերմանիան, որտեղ կապիտալիստական արդիւնագործութեան արագ զարգացումն ապահովւած էր արտաքին և ներքին պայմանների այս կամ այն զուգաւորութեամբ և որտեղ նա անհրաժեշտօրէն բերում էր իր յետևից ազգային հարստութիւնների արագ աճումը և կապիտալիստական տիրապետութեան ամրապնդումը,—այնտեղերում սկիզբ առնող սօցիալիստական կուսակցութիւնները փաստական ճշմարտութիւն չունէին դիմադրելու այդ զօրաւոր պատմական հեղեղատին, և նրանք չըհրա-

ժարւելով առարկայական լինելու ցնորքից, հպատակացրին իրենց կուսակցական ծրագիրը և գործելակերպը կատարւած փաստին՝ շրջապատելով նրանց որոշ թէօրիական դրութիւններով։

Այսպէս է անկասկած, գիտական սօցիալիզմի ժամանակակից սօցիալդէմօկրատական թէօրիայի իսկական ծագումը։ Երբ նրան այսպէս ենք բացատրում, նա իհարկէ կորցնում է իր ընդհանրական բնաւորութիւնը. բայց դրա հետ միասին նա կորցնում է յատուկ գերզգայական գունաւորումը, կատարելապէս իրական պատմական հիմք ընդունելով։ Փոխանակ այն ընդհանուր, և, ինչպէս տեսանք, քննադատութեան չըդիմացող փիլիսոփայական և գիտական հիմնաւորման, որը յանգում է այն դրութեան, թէ «ժամանակակից արդիւնագործութեան զարգացումը անխուսափելիօրէն հասցնում է սօցիալիզմի»։ Այդ պատճառով էլ իւրաքանչիւր սօցիալիստական կուսակցութիւն պիտի յետ կենայ այդ ժամանակակից արդիւնագործութեան հիմքերը խախտելուց,—ժամանակակից սօցիալդէմօկրատական կուսակցութիւնը այն ժամանակ ընդունում է հետեւեալ, կատարելապէս իրական փաստական հիմնաւորումը, որ միայն որոշ կապիտալիստական երկրին է վերաբերում.—որովհետև այսինչ կապիտալիստական երկիրն արդէն ոտք է դրել կապիտալիստական զարգացման ճանապարհի վրա, որը չի կարող մի սօցիալիստական կուսակցութեան արգելք լինի, ապա ուրեմն վերջինս ստիպւած է կամայ-ակամայ միայն այս կապիտալիստական զարգացման շրջանակներում զարգանալ մինչև այն րոպէն, երբ նրան հնարաւորութիւն կը ներկայանայ այս շրջանակներից դուրս գալու, իրենից՝ թօթափելու բուժուական տիրապետութեան շղթաները և անցնելու դէպի յեղափոխական պատւանդանը։

Այսպիսի զուտ փաստական հիմնաւորումը ամենեւին գործի էութիւնը չըփոխելով, մի նշանախեց անգամ չըփոխելով սօցիալդէմօկրատական կուսակցութիւնների գործելակերպից, նրանց դուրս կը բերէր այն տարօրինակ վիճակից, որ նրանք այժմ ունին, երբ գտնուելով հալածւած և հետապնդւած կուսակցութիւնների վիճակում, որոնք ճնշւած են իրենց սօցիալիստական ձգտումների ամեն մի արտայայտութեան ժամանակ, իբր նրանք մի տեսակ կամաւոր կերպով են յետ կենում յեղափոխական դիմադրութիւն ցոյց տալուց իրենց ճնշող բուրժուական պետութեան բանի ակտերին։

Վերջապէս, սօցիալդէմօկրատական ծրագիրը այսպէս փաստօրէն հիմնաւորելով է միայն, որ բնական ճանապարհով լուծւում է այն հարցը, որը այլ կերպ նրա համար անլուծելի կը լինէր—

հարցը, որ վերաբերում է կապիտալիստական կազմի հետ կոմպրոմիսի գործելակերպից (որ ձևակերպուած է նրա նւազագոյն պահանջների բաժնում) դէպի բացարձակ յեղափոխական սօցիալիզմի պահանջներին համապատասխանող գործելակերպը փոխանցւելու բուպէին։ Եւ խնկապէս որ, եթէ սօցիալդէմօկրատական կուսակցութիւնը ոչ թէ երկաթէ անհրաժեշտութիւնից ստիպւած, այլ միայն իր սեփական թէօրիայի պահանջներին հպատակւելով է սօցիալիստական շարժումը երկու ժամանակաշրջանների բաժանում՝ ոչ յեղափոխական և յեղափոխական, ապա ուրեմն պարզ է որ այդ իսկ թէօրիայում պիտի որ և է նշաններ ցոյց տւած լինին, որոնցով կուսակցութիւնը կարողանար որոշել մի ժամանակաշրջանից միւսին անցնելու ժամանակը. հակառակ դէպքում նրա համար փաստօրէն անհետանում է ամեն մի հնարաւորութիւն յեղափոխական թէ ոչ-յեղափոխական գործելակերպը ընտրելու։ Օրինակ՝ ինչ նշաններից է հիմնում գերմանական սօցիալիստական կուսակցութիւնը, որը այժմ 3 միլիօն ձայներ իրենն է հաշւում, որ նրա համար վերջապէս ժամանակը հասել է կործանելու բուրժուական պետութիւնը։ Դա այն րոպէին կըլինի, երբ նա 4 միլիօն ձայն կունենայ, թէ երբ որ նա 8 միլիօն կունենայ։ Բէբէլը, ինչպէս յայտնի է, Ամստերդամի կօնգրէսում այն միտքը յայտնեց, որ պէտք է սպասել մինչև 7 կամ 8 միլիօն։ Բայց այդ առիթով մարդ ակամայ յիշում է Փարիզի կօմմունայի օրինակը.— 30 տարի առաջ ֆրանսիական սօցիալիստական կուսակցութիւնը շատ անգամ աւելի փոքրաթիւ, քան այժմ, և այնուամենայնիւ նա այն ժամանակ անցաւ բացարձակ ապստամբութեան և դեռ ես մի սօցիալիստ չէ գտնւել, որը խելակորոյս սխալ համարէր այս մեծ պատմական ակտը, որը փառաբանել է ինքը Մարքսը, սօցիալդէմօկրատներից մեծագոյնը։ Ով գիտէ, գուցէ և գերմանական սօցիալդէմօկրատիային սպասում են մեծ պատմական դէպքերն աւելի վաղ, քանթէ նա կը հաւաքէր մինչև անգամ 4 միլիօն ձայն, միալով բուրժուական պետութեան լծի տակ։ Հազիւ թէ, ասենք, մէկն ու մէկը սկսի լրջօրէն վիճել այն բանի դէմ, որ այդպիսի հարցերը մինչև անգամ չեն կարող ենթարկել ընդհանուր թէօրիական լուծման։ Ապա ուրեմն, էլ ինչու սօցիալդէմօկրատական թէօրիան իր վրա է վերցնում այս ուժից վեր գործը, իր կուսակցութեան համար մի տեսակ սկզբունքային ծրագրային պարտաւորութիններ սահմանելով այն ժամանակաշրջանի վերաբերմամբ, երբ նա պէտք է, իր նւազագոյն ծրագրի օրէնսգրքի համաձայն, միայ ոչ յեղափոխական գործելակերպի սահմաններում

Եթէ մեզ կասեն, որ սօցիալդէմօկրատական թէօրիան ամենևին չի հրահանգում այդ տեսակ ծրագրային պարտաւորութիւններ, այլ որ նա միայն հաստատում է սօցիալիստական կուսակցութիւնների՝ ղեկավարութեան համար այն ընդհանուր օրէնքը, որ նրանց զարգացումը անքակտելի կապուած է կապիտալիստական արդիւնաբերութեան հետ և որոշ ժամանակաշրջանի ընթացքում բուրժուական կազմի պայմաններում զարգանալով միայն, կողք կողքի կապիտալիստական զարգացման հետ, նրանք հետևած կը լինին պատմութեան օրէնքին և ոչ թէ նրա դէմ գնացած,—ապա մենք այնուամենայնիւ կըհարցնենք՝ արդեօք սօցիալդէմօկրատիան հէնց իրենցից՝ սօցիալիստական կուսակցութիւններից կախուած է համարում իրենց զարգացման այդ պայմանների ընտրութիւնը, այսինքն՝ այն որոշումը, որի համեմատ նրանք պիտի մի որոշ ժամանակաշրջան զարգանան բուրժուական կազմի շրջանակներում, այն հողի վրա, որ ստեղծւում է կապիտալիստական արդիւնաբերութեան զարգացումից, թէ՞ այդ որոշումը նրանց վրա դնում են պայմանների ուժը, հէնց իրեն կապիտալիստական արտադրութեան եղանակի կայունութիւնը և անյաղթելիութիւնը։ Եթէ այդ որոշումը համարւում է կախուած սօցիալիստական կուսակցութիւնից, ապա ուրեմն դա նշանակում է որ սօցիալդէմօկրատական թէօրիան նրանց հրահանգում է մեզ չըխառնւել, նրանց գործելակերպի համար հաստատում է մի պարտաւորիչ ոչ յեղափոխական շրջան բուրժուական տիրապետութեան վերաբերմամբ, իսկ մեր բերած կօնկրէտ օրինակում՝ պիտի Փարիզի Կօմմունայի հրապարակումը մի ճակատագրական սըխալ համարէ։ Իսկ եթէ այս որոշումը դրւում է սօցիալիստական կուսակցութիւնների վրա պայմանների ուժով, ապա ուրեմն դա նշանակում է, որ սօցիալդէմօկրատական թէօրիան հանդիսաւոր կերպով հրահանգում է նրանց հետևել զարգացման այն ճանապարհին և բուրժուական տիրապետութեան վերաբերմամբ այն քաղաքականութեան, որոնք նրանք չէին էլ կարող փոխել, եթէ մինչև անգամ ցանկանային էլ։

Քանի որ մենք համաձայնեցինք անթոյլատրելի համարել ընդհանուր թէօրիական վճիռները, որոնք վերաբերում են ոչ յեղափոխականից յեղափոխական գործելակերպին անցնելու րոպէին, ապա ուրեմն հետևաբար մնում է երկրորդ ենթադրութիւնը, այսինքն որ սօցիալդէմօկրատական թէօրիան ուղղակի արձանագրում է փաստական անհրաժեշտութիւնը, որ սօցիալիստական կուսակցութիւնները իրենց ամբողջ քաղաքականութիւնը հպատակացնեն կապիտալ.

զարգացման պայմաններին մինչև այն րոպէն, երբ նրանց հնարաւորութիւն կըներկայանայ իրենցից այս ծանր շղթան թօթափելու։

Սօցիալդէմօկրատական նւազագոյն ծրագրի ընդհանուր թէօրիական հիմնաւորման հէնց այս զուտ-ֆիկտիւ բնարաւորութեան վրա էր որ մենք ուզում էինք հրաւիրել ընթերցողների առանձին ուշադրութիւնը։ Միթէ, խոկապէս, տարօրինակ չէ, ամբողջ պատմափիլիսոփայական շէնքեր կառուցել, որոնց հիման վրա այս կամ այն սօցիալիստական կուսակցութեան հրահանգէ խնամքով վերաբերմունք դէպի արդիւնաբերական զարգացման շահերը, երբ բանից դուրս է գալիս, որ նրանք փաստօրէն անում են այս արդիւնաբերական զարգացմանը խանգարելու, որ փաստօրէն նրանք հարկադրւած են ընտրելու իրենց զարգացման ճանապարհը և իրենց դասակարգային կռիւը մղելու բուրժուական կազմի այն շրջանակներով, որոնց նրանք ներկայումս հնարաւորութիւն չունին իրենցից թօթափելու։ Երբ որոշ քաղաքական կուսակցութիւն գտնւում է մի փաստի դիմաց, որին նա պիտի հպատակեցնէ իր ամբողջ կուսակցական գործելակերպը, ապա ուրեմն առնւազն անօգուտ է ի պաշտպանութիւն այդ գործելակերպի այն մտածողութիւնը առաջ բերել, որ հէնց այդ է այն գործելակերպը, որը ամենից աւելի ցանկալի է և օգտակար նոյն այդ քաղաքական կուսակցութեան շահերի տեսակէտից։

Եւ ոչ միայն անօգուտ է, այլ և հեշտ է ցոյց տալ, որ այսպիսի ֆիկտիւ թէօրիական պաշտպանութիւնը սօցիալիստական կուսակցութեան զարգացման այն ճանապարհի, որը նրա վրա դրւում է պայմանների ուժով, իրեն յետևից կը բերի կեղծ սկզբունքային վերաբերմունք դէպի կապիտալիստական կազմը։ Որովհետև այլ բան է՝ բուրժուական կազմի շրջանակներում զարգացման պայմաններին նայել ինչպէս մի երկաթէ անհրաժեշտութեան վրա, որ իրերի ուժով դրւած է, և բոլորովին ուրիշ բան է՝ նրանցում տեսնել իր ծրագրի թէօրիական պահանջների իրագործումը։ Այդ իսկ մաքով է որ գոյութիւն ունի իսկական զանազանութիւն օպպորտունիստական և յեղափոխական ուղղութիւնների միջև ժամանակակից արևմ.-եւրոպական սօցիալիզմում։ Ամբողջ զանազանութիւնը, օրինակ, Ժօրէսի և Վայիանի միջև, կամ աւելի ևս՝ Ժօրէսի և ժամանակակից յեղափոխական սինդիկալիզմի սօցիալիստական ներկայացուցիչների միջև հէնց նրանումն է, որ Ժօրէսը անկեղծ կերպով յայտարարում է, որ քանի դեռ ֆրանսիական հանրապետութիւնը չի խախտում ֆրանսիական դէմօկրատիայի ձեռք բերած իրաւունքները, ֆրանսիական սօցիալիստական դէմօկրատիան պի-

տի հրաժարւի յեղափոխական ապստամբութիւններից։ Իսկ Վալիանը և աւելի ևս յեղափոխական սինդիկալիստները սկզբունքով այդ չեն ընդունում, իսկ վերջիններս՝ մինչև անգամ իրենց ընթացիկ գործնական կեանքում։ Մի որոշ ժամանակաշրջանում, մի սօցիալիստական կուսակցութեան կեանքում կարող են հնարաւոր պայմաններ չը ներկայանալ յեղափոխական հողին փաստօրէն անցնելու համար, բայց դա ամենևին չի ոչնչացնում ամբողջ կարևորութիւնը նրա սկզբունքային—յեղափոխական վերաբերմունքի դէպի բուրժուական կազմը, որը անհրաժեշտաբար իւր բաժին ազդեցութիւնը կունենայ փոխանցման հէնց հնարաւորութեան վրա, քանի որ մինչև անգամ «պատմութեան մատերիալիստական ըմբռնողութիւնը՝ տնտեսական անհրաժեշտութեան հետ կողք կողքի ընդունում է սօցիալական զարգացման և այլ գործօններ, որոնք թէև տնտեսական մօտիւներով են սահմանւում, բայց միևնոյն ժամանակ յաճախ կրում են գաղափարական և բարոյական բնաւորութիւն»։ Մենք արդէն տեսացինք, որ ոչ մի դէպքում չենք կարող արևմ.-եւրոպական սօցիալդեմօկրատիային պատասխանատու համարել այն բանի համար, որ նա փաստօրէն իր գործակերպը հպատակեցրել է կապիտալիստական զարգացման անկասեցնելի ընթացքին, բայց ամենևին ոչ մի հիմք չենք գտնում, որ նա այս լերկ փաստը, բուրժուազիայի կուտակած հարստութիւնների այս տարերային իշխանութիւնը, որոնք ճնշում են բանւորական շարժումը, բարձրացնի մինչև նախախնամական ճանապարհի աստիճանը, որ նրա համար պատրաստուած է սօցիալիզմի ամենաարագ իրագործման դիտումներով։

***

Մենք արդէն տեսանք, որ կապիտալիստական արդիւնաբերութեան զարգացումը, իրեն յատուկ օրէնքների զօրութեամբ, անխուսափելիօրէն ընդունում է միջազգային բնաւորութիւն և որոշ արդիւնաբերական երկրի սահմաններից տեղափոխւում է միջազգային հողի վրա, միաժամանակ նրա սկզբնական աղբիւրից բղխած կապիտալիստական շահագործման շրջանը, այսպէս ասած, նրա մայր երկրից բղխած, տարածւում է ուրիշ տնտեսական զարգացմամբ յետ մնացած երկրների վրա։ Արդիւնաբերական զարգացման այս ընթացքը, որ բղխում է կապիտալիստական արտադրութեան եղանակի հիմնական օրէնքներից, անհրաժեշտաբար իր յետևից բերում է այն, որ նրա ընդգրկած համաշխարհային շրջանը բաժանւում է երկու կաթէգորիայի երկրների, որոնցից ոմանք դառնում են աշխարակալներ արդիւնաբերական հրապարակում, իսկ միւսները

դառնում են նրանց հարկատուները։ Ապա մենք տեսանք, որ առաջին կաթէգօրիայի աշխարհակալներ դարձած երկրներում, իբրեւ հետեւանք այս կամ այն պատմական պայմանների, որոնք պայմանաւորել են նրանցում կապիտալիստական արդիւնաբերութեան աւելի վաղ և աւելի արագ զարգացում, բուրժուազիայի ձեռքում անխուսափելիօրէն կուտակւում են հսկայական հարստութիւններ, որ ստեղծւում է ոչ միայն տեղական բանւորական մասսաների չըվճարուած աշխատանքով, այլ բաւական զգալի չափով, նաև միւս պետութիւնների բանւորական մասսաների չըվճարուած աշխատանքով, և դրա հետեւանքը լինում է այն, որ այդ երկրները դառնում են հարուստ մարդկանց այնպիսի բացառիկ աթոռանիստներ, դառնում են այն Թիրգարտէնները և Մօնտէկարլօները, որոնց մասին խօսում է Կաուցկին։ Մենք խօսեցինք նոյնպէս այն սօցիալական հետեւանքների մասին, որ իր յետեւից բերում է իրերի այսպիսի դրութիւնը։ Արդիւնաբերական զարգացման այս գլխաւոր կենտրօններում, միջազգային կապիտալիզմի այս մայր երկրներում, որոնք կապիտալիստական զարգացման ուղին ոտք են դրել այն ժամանակ, երբ դեռ սօցիալիստական գաղափարները աղօտ առկայծում էին հեռւում, քողարկւած կռւով ֆէօդալական կազմի հետ, և դեռ իրենք թոյլ զարգացած հէնց կապիտալիզմի քիչ զարգացած ձեւերի պատճառով,—այն շրջանում, երբ բանւորական մասսաները չափազանցրած յոյսեր ունէին քաղաքական ազատագրութեան հետեւանքների վրա,—այդ երկրներում կապիտալիստական զարգացումը, յափշտակելով համաշխարհային շուկայի դեռ չըբռնած շրջանները և իր մօտ՝ տանը բանւորական շարժման կողմից խոշոր դիմադրութեան չըհանդիպելով, առաձնապէս արագացրած տեմպով էր գնում, և ծագած սօցիալիստական կուսակցութիւնների դիմաց հանդիսանում էր իբրեւ արդէն պատրաստի և մեծ հասարակական ուժ։ Այդ իսկ երկրներում, ծագող սօց.-կուսակցութիւնները անզօր էին կուելու արդիւնաբերական զարգացման անկասեցնելի հեղեղատի հետ, և ստիպւած էին, մինչև որոշ ժամանակ, նրան հպատակեցնել իրենց կուսակցական քաղաքականութիւնը և իրենց նւազագոյն պահանջների համապատասխան ծրագիր մշակել։

Բայց մենք դարձեալ կրկնում ենք, որ այս արդիւնաբերօրէն զարգացած երկրների սօցիալիստական շարժման մի տեսակ ժամանակաւոր խաղաղութեան պայմանագիրը կապիտալիստական կազմի հետ, քաղաքական անհրաժեշտութեան մի ակտ է հանդիսանում, և ոչ թէ ընտրութեան, որին ղեկավար էր մտա—

ծողութիւնը սոցիալիստական շարժման զարգացման ամենայաջողակ պայմանների մասին։ Սա ամենակարճ ճանապարհի ընտրութիւն է, որ անում է մի ուղևոր, որ գնում է երկու բարձր քարէ պատերի մէջ ընկած ճանապարհով։ Եւ մենք տեսանք, որ հէնց առաջին պատահած քանդուածքը այդ պատերի մէջ տեսնելիս, նա նետւում է այդ կողմը, ինչպէս որ դա պատահեց 1871 թւին Փարիզի պրոլէտարիատին, և ինչպէս որ անհրաժեշտաբար պիտի նրան պատահէր այն տրամադրութեան մէջ, որ անխուսափելիօրէն բատեղծւում է մի բանւորական կուսակցութեան շարքերում, որի լաւագոյն ձգտումները ճնշւում է յաղթող, անհաշտ և անամօթ թշնամին։

Եթէ որ 1871 թւի ֆրանսիական սոցիալիստները հետևած լինէին սոցիալդէմոկրատական ուղղափառ թէօրիային, ապա ուրեմն նրանք իրենց նւազագոյն ծրագրով, որը իրագործում էին ապստամբութեան օրերին, պիտի մնային բուրժուա-դէմոկրատական շրջանակներում, խիստ ժուժկալութեամբ վերաբերւելով դէպի ամեն մի գործ սոցիալիստական յարաբերութիւնների շրջանը մտնելու, որը կարող էր Ֆրանսիայի յետադնաց կապիտալիստական զարգացման խոչընդոտ լինել։ Այս կոնկրէտ պատմական փաստը, որ բաւական վսեմ է ամեն մի թէօրիայի վերաբերմամբ ստուգիչ ծառայելու համար, մեզ կարող է լաւ օրինակ ծառայել սոցիալդէմոկրատական թէօրիայի իսկական բնաւորութիւնը պարզաբանելու համար, որը կառուցւած է այն ենթադրութեան վրա, թէ կապիտալիզմի զարգացումը բարեյաջող ազդեցութիւն ունի սոցիալիստական շարժման վրա, և որը մի տեսակ հրահանգում է մօտակայ գործելակերպի խնդիրներում մնալ բուրժուական կազմի շրջանակների սահմաններում։

Իսկապէս որ, եթէ որոշ երկրի հէնց կապիտալիստական զարգացման պրօցէսը հանդիսանում է իբրև գլխաւոր որոշիչ գործօն նրանում սոցիալական յեղաշրջումը նախապատրաստելու համար, և եթէ այդ երկրի կապիտալիստական զարգացման աստիճանն է, որ հանդիսանում է այն վճռող մօմէնտը, որը ամբողջապէս պայմանաւորում է այդ երկրի սոցիալիստական կուսակցութեան համար հնարաւորութիւն պաշտպանւող-սպասողական գործելակերպից յեղափոխականին անցնելու՝ տնտեսական կազմի վերաբերմամբ, ապա ուրեմն պարզ է, որ 1871 թւի Ֆրանսիան իր կապիտալիստական զարգացման պրօցէսով դեռ բաւական նախապատրաստւած չէր այդպիսի փոխանցման համար։ Հակառակ դէպքում, ինչպէս կա-

րելի է բացատրել թէկուզ հէնց այն փաստը, որ մինչև անգամ ներկայումս, նոր 35 տարի էլ անցնելուց յետոյ, որոնց ընթացքում ֆրանսիական կապիտալիզմը չէ ընդհատել իր զարգացման պրոցէսը, ֆրանսիական սօցիալդէմօկրատական կուսակցութիւնը դեռ ևս էլի սահպւած է մնալ նոյն պաշտպանուող-սպասողական շրջաններում։

Կատարելապէս ակնայայտնի է նոյնպէս, որ սօցիալդէմօկրատական թէօրիայի իսկական իմաստի լաւագոյն մեկնաբանողները՝ Մարքսը և Էնգէլսը, չէին կարող այն ժամանակ Ֆրանսիան՝ նրա առաջին գիւղացիական ազգաբնակութեամբ, և նրա համեմատ յետամնացութեամբ արդիւմաբերական զարգացման տեսակէտից, թէկուզ հէնց Անգլիայի հետ համեմատած, համարել մի այնպիսի երկիր, որը առաջինն է անցել իր կապիտալիստական զարգացման ամբողջ անիւը, և արդէն պատրաստել է բոլոր նիւթական և ոգեկան պայմանները սօցիալիստական կազմին անցնելու համար։

Այդ դէպքում ապա ինչով կարելի է բացատրել 1871 թւի Փարիզի բանւորական ապստամբութեան բնաւորութիւնը և թէ Մարքսի և Էնգէլսի վերաբերմունքը դէպի նա։

Փոխանակ խիստ քննադատական վերաբերմունքի դէպի այս ապստամբութիւնը, իբրև Փարիզի պրօլէտարիատի մի խելակորոյս փորձ՝ ժամանակակից առաջ իրենից թօթափելու կապիտալիստական լուծը, մենք նրանից կողմից այս դէպքում բոլորովին հակառակ ենք նկատում.—ոչ մի նախատողական խօսք, այլ հրճւալից խոնարհումն հերոսական փորձի առաջ։ Այնինչ Էնգէլսը որոշակի յայտարարում է «Քաղաքացիական կռւի» իր յառաջաբանում, որ «Մարտի 18ը կարուկ և վճռական ձևով առաջին տեղը քաշեց Փարիզի շարժման դասակարգային բնաւորութիւնը», որ «Կոմմունան վճիռներ էր կայացնում, որոնք ուղղակի կապւած էին բանւոր դասակարգի շահերի հետ, և որոնք որոշ չափով վերացնում էին հին սօցիալական կարգը»,—և եթէ մի բանի համար ցաւում է, այն էլ միայն նրա համար, որ հէնց տնտեսական տեսակէտից Կոմմունան չափ քան ուշադրութիւնից վրիպեցրեց, որը նա պիտի մեր այժմեան հասկացողութիւնների համաձայն արած լինէր։ «Ամենից դժւար է—նրա կարծիքով—այժմ հասկանալ այն պատկառալից երկիւղը, որով նա կանգ առաւ ֆրանսիական բանկի դռների առաջ»։

Կոմմունայի բոլոր դէկրէտներից, Էնգէլսի կարծիքով, ամենակարևորը այն էր, որը հրահանգում էր այնպիսի կազմակերպութիւն արդիւնաբերութեան և մինչև անգամ ձեռագործի (мануфатура), որը

ոչ միայն ենթադրում էր իւրաքանչիւր գործարանում բանւորական գործակցութիւններ ստեղծելը, այլև պիտի միացնէր բոլոր առանձին գործակցութիւնները մի միութեան մէջ։ Այդ կազմակերպութիւնը—շարունակում է նա—ինչպէս կատարելապէս իրաւացի նկատել է Մարքսը, պիտի վերջիվերջոյ Կոմմունիզմի յանգեցնէր»...

«Ուզո՞ւմ էք իմանալ, մեծապատիւ պարոններ, թէ ինչ է պրոլէտարիատի դիկտատուրան,—այսպէս է վերջացնում Էնգլէսը իր յառաջաբանը—լաւ նայեցէք Փարիզի Կոմմունային, դա պրոլէտարիատի դիկտատուրա էր»։

Ճիշտ նոյնպիսի ըմբռնում Փարիզի 1871 թւի շարժման վերաբերմամբ արտայայտել է Մարքսը։ Նա ուղղակի Փարիզի Կոմմունան անւանում է «սոցիալիստական հանրապետութիւն»։ «Կեցցէ սոցիալական հանրապետութիւնը»—աղաղակը, գրում է նա, որով Փարիզի պրոլէտարիատը ողջունում էր Փետրւարեան յեղափոխութիւնը, արտայայտում էր մի անորոշ ձգտումն դէպի այն հանրապետութիւնը, որը կըհեռացնէր ոչ միայն դասակարգային տիրապետութեան միապետական ձևը, այլ ընդհանրապէս հէնց այդ տիրապետութիւնը։ Կոմմունան այդ հանրապետութեան որոշ ձևն էր»։ [1]

Եւ ապա.—«Կոմմունայի գաղտնիքը նրանումն էր, որ նա ըստ իր էութեան բանւոր դասակարգի կառավարութիւն էր, արտադրողների դասակարգի և իւրացնողների դասակարգի միջև եղած կռւի հետևանք, վաղուց կատարւած մի քաղաքական ձև, որի մէջ կարողանար կատարւել աշխատանքի տնտեսական ազատագրութիւնը... Այդ պատճառով Կոմմունան պիտի իբրև լծակ ծառայէր տապալելու այն տնտեսական հիմքերը, որոնց վրա հաստատւած է դասակարգային կազմը և դասակարգային տիրապետութիւնը... Այո, մեծապատիւ պարոններ, Կոմմունան ուզում էր ոչնչացնել այն դասակարգային սեփականութիւնը, որը գործադրւում է մասսաների աշխատանքը քչերի համար հարստութիւններ ստեղծելու։ Նա ուզում էր սեփականազրկել սեփականազրկողներին»։ [2]

Այսպիսով, անկասկած է, որ Մարքսն ու Էնգէլսը բանւորների Փարիզի ապստամբութեան մէջ տեսնում էին մի փորձ յեղափոխական ճանապարհով փոխելու այն հասարակական պայմանները, որոնց մէջ ստիպւած է զարգանալ բանւորական շարժումը

---

1) «Քաղաքացիական կռիւը»։

2) Նոյն տեղում։

քրերի խաղաղ ընթացքի դէպքում, այն պայմանները, որոնց ըստեղծում է ինքը կապիտալիստական զարգացման պրօցէսը։ Եւ սակայն նրանց գլուխն անգամ չէր գալիս այստեղ մի ինչոր ընդհանուր սօցիօլօգիական օրէնքի խախտում տեսնել. մի օրէնքի՝ որով պիտի ղեկավարուեն սօցիալիստական կուսակցութիւնները, որ չը լինի թէ շեղուեն «իրենց բնական զարգացման ճանապարհից»։ Նրանք Փարիզի ապստամբութեան մէջ տեսնում էին անխուսափելի հետեւանքը անհաշտելի դասակարգային հակամարտութեան (անտագօնիզմ), որն ստեղծում է հասարակութեան մէջ լարուած յեղափոխական մթնոլորտ և հէնց առաջին հնարաւորութեան դէպքում արտայայտւում է ապստամբական պոռթկումներով։ Այս ապստամբութեան մէջ նրանք տեսնում էին էպիզօդներից մէկը այն երկարատեւական յեղափոխական կռուի, որին չի կարելի կօնկրէտ կերպով երեւակայել միայն մի յեղափոխական վերջաբանական ակտի մէջ, որ նախապատրաստուել է բանւորական շարժման խաղաղ զարգացմամբ բուրժուական կազմի շրջանակներում։

«Բանւոր դասակարգը, ասում է Մարքսը, Կօմմունայից հրաշքներ չէ պահանջում։ Նա չէ տքնում ժողովրդական որոշումներով մտցնել ոչ մի հաստատուած և որոշ ուտօպիա։ Նա գիտէ որ, որպէսզի ազատագրուի և հասնի կեանքի այն բարձրագոյն ձևին, որի զարգացմանը անյաղթելի կերպով արգելք է հանդիսանում ժամանակակից հասարակութիւնը իր տնտեսական կազմով (ընդգծ. մերն է), ստիպուած պիտի լինի վարել երկար կամակոր կռիւ (նոյնպէս) մի ամբողջ շարք պատմական պրօցէսներ ապրել, որոնք կատարելապէս կըկերպարանափոխեն ինչպէս մարդկանց, նոյնպէս և նրանց շրջապատը։ Նա չի ձգտում որևէ իդէալ իրագործելու, նա միայն ուզում է նոր հասարակութեան տարրերն ազատել, որոնք զարգացել են ամենափտած բուրժուական հասարակութեան միջավայրում»։ [1])

Մարքսի այս վերին աստիճանի հետաքրքիր նկատողութիւնների մէջ, որ նա արտայայտել է կատարելապէս որոշ և խոշոր մի պատմական դէպքի առիթով, շատ լաւ կերպով պարզւում է զանազանութիւնը Մարքսի իսկական ուսմունքի և այն սիստէմատիք դօկտրինայի միջև, ինչպէս որ նա այլասերուել է մարքսիզմի ուղղափառ դպրոցի ներկայիս կողմնակիցների մօտ։

Մարքսի իսկական ուսմունքը կապիտալիստական զարգացման

---

1) Նոյն տեղում։

մէջ տեսնում է միայն այն հողը, որի վրա զարգանում է դասակարգային կռիւը պրոլէտարիատի և բուրժուազիայի միջև։ Իսկ ինչ վերաբերում է հէնց այդ կռւին, ինչպէս ամեն մի յեղափոխական կռիւ, նա չի կարող ոչ մի թէօրիական շրջանակի մէջ տեղաւորւել և նրան չի կարելի ոչ մի օրէնքի և կանոնի յարմարացնել, որպէսզի այդ օրէնքները կատարելը ազատ պահէր նրան անյաջողութիւններից և պարտութիւններից։ Ահա թէ ինչու մենք Մարքսի «Քաղաքացիական կռւի» և նրան կցած Էնգէլսի յառաջաբանի մէջ չենք գտնում ամենափոքր ակնարկ անգամ, որ Ֆրանսիայի 1871 թւի սօցիալիստական յեղափոխութիւնը վաղաժամ և ուտօպիական է եղել։ Նրանք միայն պարզաբանում են նրա իսկական բնաւորութիւնը և որոշում են նրա պատմական նշանակութիւնը։

Ուղղափառ մարքսիզմի հայեցակէտից կապիտալիստական զարգացումը հանդիսանում է ոչ միայն այն հողը, որի վրա զարգանում է պրոլէտարիատի դասակարգային կռիւը բուրժուազիայի հետ, այլ նաև այդ կռւի ձեւը, այն շրջանակները, որոնց սահմաններից նա չպիտի դուրս գայ։ «Ժամանակակից արդիւնաբերութեան զարգացումը անհրաժեշտաբար բերում հասցնում է սօցիալիզմի», ասում է Կաուցկին. կարծես թէ ժամանակակից արդիւնաբերութեան զարգացումն արդէն ինքը դասակարգային կռիւը լինի։ «Երկար և յամառ կռիւ. ժամանակակից տնտեսական կազմի հետ, որը խանգարում է կեանքի բարձրագոյն ձեւերին հասնելուն, պատմական պրօցէսների մի ամբողջ շարք, որոնք վերանորոգում են ամբողջապէս թէ մարդկանց և թէ նրանց ամբողջ շրջապատը», ահա թէ ինչն է բերում հասցնում սօցիալիզմին, ասում է Մարքսը։ Ըստ Կաուցկու ֆօրմուլայի, ժամանակակից արդիւնաբերութեան զարգացումը (ուրեմն և կապիտալիստական կազմի պահպանումը) չի կարելի բաժանել սօցիալիստական շարժումից, նրանք իրար հետ չեն մաքառում, այլ ձուլւում են մի պրօցէսում։ Իրեն՝ Մարքսի մտքի համեմատ, կապիտալիստական կազմը (ուրեմն և կապիտալիստական զարգացումը) և սօցիալիստական շարժումը հանդիսանում են երկու թշնամի, իրար դէմ մաքառող կողմեր, և սօցիալիստական շարժումը պիտի մի շարք հարւածներ հասցնի ժամանակակից տնտեսական կազմին, որը խանգարում է կեանքի բարձրագոյն ձեւերին հասնելու։ Նա պիտի ձգտի կապիտալիստական պայմանների ճնշումից ազատել նոր հասարակութեան այն տարրերը, որոնք արդէն զարգացել են բուրժուական հասարակութեան

միջավայրում։ Մարքսը չի ասում, որ «ժամանակակից արդիւնաբերութեան զարգացումը» կըբերի կըհասցնի սօցիալիզմին. Նա միայն ասում է, որ ժամանակակից արդիւնաբերութեան զարգացումը անխուսափելիօրէն առաջ կը բերի կռիւ բանւոր դասակարգի և կապիտալիստական կազմի միջև, որը, եթէ միանգամ յեղափոխական ձև է ստանում, անխուսափելիօրէն ձգտում է քանդել հիմքերը բուրժուական հասարակութեան, «վերացնել հին սօցիալիստական կարգը», Էնգէլսի արտայայտութեամբ։ Մարքսը և Էնգէլսը ոչ մի տեղ իրենց վէտօն չեն դնում յեղափոխական ձեռնամխութիւնների վրա կապիտալիզմի վերաբերեալ բանւորական շարժման զարգացման ժամանակաշրջանում, այն ինչ Կաուցկու ֆօրմուլան պարզ է որ վերացնում է դասակարգային կռւի յեղափոխական մօմէնտները։ Նա մինչև սկզբունքի աստիճանն է բարձրացնում սօցիալիստական շարժման այն վերաբերմունքը դէպի կապիտալիզմը, որը նրա վրա դրւում է փաստի զօրութեամբ այն երկրներում, որոնք աչքի են ընկում նրանցում կապիտալիստական արտադրութեան եղանակի յաջողակ զարգացմամբ։

*
* *

Այսպէս է ժամանակակից սօցիալիստական թէօրիայի բռնած դիրքը դէպի արդիւնաբերօրէն զարգացած երկրները, որտեղ սօցիալիստական շարժումը արդէն շատ երկար ժամանակի ընթացքում պիտի զարգանար, հետևելով կատարեալ անձեռնմխելիութեան կապիտալիստական կազմի բոլոր հիմքերի վերաբերմամբ։ Մենք տեսանք որ զարգացման այս եղանակի, բուրժուազիայի դէմ պրօլէտարիատի մղած դասակարգային կռւի այս խաղաղ ձևի իսկական բացատրութիւնը պիտի փնտրել ոչ թէ համապատասխան սօցիալ-դէմօկրատական թէօրիայի իրաւացիութեան մէջ, ոչ թէ այնտեղ, որ իրենք՝ սօցիալիստական կուսակցութիւնները գիտակցաբար ընտրել են իրենց ներկայացած բոլոր ճանապարհներից ամենալաւը, այլ այդ երկրներում կապիտալիզմի մի առանձին ուժի և կայունութեան մէջ, այն քաղաքական հզօրութեան մէջ, որին հասնում է նրանցում բուրժուազիան շնորհիւ. նրա ձեռքում կուտակւող հսկայական հարստութիւնների։ Այժմ տեսնենք, թէ այդ տեսակէտից ինչ վիճակի մէջ է սօցիալիստական շարժումը իրենց կապիտալիստական զարգացման մակերևոյթով յետամնաց երկրներում,

և ինչ ազդեցութիւն պիտի ունենայ դա այդ երկրում դասակարգային կռուի փաստական ընթացքի վրա և նրանց սօցիալիստական կուսակցութիւնների նւազագոյն ծրագրի ձևակերպութեան վրա։

Իրենց կապիտալիստական զարգացմամբ ուշացած և լետամնաց երկրներում աւելի քիչ չափով է, ինչպէս ինքն ըստ ինքեան ենթադրւում է, արտայայտւում կապիտալիզմի միջազգային բնաւորութիւնը։ Նշանաւոր գաղութներ և արտաքին շուկաներ գտնելու դժւարութիւնը հանդիսանում է նրանցում կապիտալիստական արդիւնաբերութեան դանդաղ զարգացման գլխաւոր պատճառներից մէկը։ Քանի որ իբրև մի երկրի ամենատիպիքական օրինակ, որտեղ սօցիալիստական շարժումը զարգանում է կապիտալիզմի թոյլ զարգացման պայմաններում, ներկայանում է մեզ Ռուսաստանը, ապա ուրեմն երկրի լետագնաց բնորոշման ժամանակ մենք նկատի կունենանք հէնց այդ երկիրը։ Նրանում, ինչպէս յայտնի է, մինչև անգամ կապիտալիստական զարգացման առաջին աստիճանը, սկզբնական կուտակման աստիճանը, անցել է ամբողջապէս հէնց երկրի իրեն սահմաններում։ Միջին դարերը մեզ ժառանգութիւն չեն թողել ոչ մի գաղութ, ինչպէս Անգլիայում, ոչ էլ մինչևանգամ հարուստ վաճառականական քաղաքներ, ինչպէս Գերմանիայում։ Կապիտալիստական դարաշրջանի ամբողջ անխուսափելի նախերգանքը, «որը մարդկութեան պատմութեան էջերում գրւած է արիւնոտ և հրեղէն տառերով», մեզանում տեղի ունեցաւ ֆիսկալ, երկաթուղային և հացավաճառային ներքին կողոպուտի ձևով։ Բայց այն թշւառ հողաբաժիններով, որ գիւղացիութեան բաժին ընկաւ «մեծ բարենորոգումների էպօխայից», այդ աղբիւրը մեծ չէր, և կապիտալիստական արդիւնաբերութիւնը պատւաստելու քաղաքականութիւնը իրագործելու համար օտարերկրեայ կապիտալներ հարկաւորւեցին, թէ պետական պարտքերի ձևով և թէ արդիւնաբերական ձեռնարկութիւնների մէջ անմիջական գործադրութեան ձևով։ Պետութեան օգնութեամբ կապիտալիզմը պատւաստելու քաղաքականութիւնը մեզանում տարւում էր անօրինակելի տոկունութեամբ։ Սա իր տեսակում միակ քաղաքականութիւնն էր, որտեղ «պետական գաղափարը», որ համապատասխանում էր ծնւող բուրժուազիայի դասակարգային շահերին, շատ յարմար կերպով միատեղւում էր իսկական գանձարանագողութեան հետ, այդ պատճառով էլ ռուս բուրժուազիայի և ինքնակալական բիւրօկրատիայի միջև այդ հողի վրա կռած դաշնը շատ հաստատուն եղաւ։ Քառասուն տարի շարունակ անընդհատ պետական փոխա-

տութիւններ էին արւում, երկաթուղիներ էին շինւում և պետական նպաստներ էին հնարւում, որոնք գրաւում էին դէպի Ռուսաստան օտարերկերայ կապիտալներ։ Ֆրանսիական կամ գերմանական կապիտալիստները ստիպւած չէին կւում իրաւունք ձեռք բերել իրենց կապիտալներով մեր բանւորական մասսաները շահագործելու համար։ Ռուսաստանը ինքն էր նրանց դէպի իրեն գրաւում իր վաշխառուական և արդիւնաբերական վաստակի բարձր նորմայով։ Այսպիսով Ռուսաստանի համար շատ շուտ ստեղծւեց տնտեսապէս տիրապետւած երկրի, ուրիշ, արդիւնաբերօրէն աւելի զարգացած երկրների, հարկատուի վիճակ, որի մէջ հէնց արտայայտւում է նրա լետամնացութիւնը կապիտալիստական զարգացման տեսակէտից։ Այսպիսի վիճակի միջազգային բնաւորութիւնը ոչ թէ նրանումն է, որ ռուս կապիտալիստները շահագործում են ուրիշ երկրների բանւորական մասսաները, այլ նրանում, որ ռուս բանւորական մասսաները շահագործւում են օտարերկրեայ կապիտալիստների ձեռքով։

Բայց հեշտ է հասկանալ, թէ իրերի այդպիսի դրութիւնը ինչ վնաս է հասցնում ռուս բուրժուազիայի հարստութեան և հզօրութեան, կամ աւելի լաւ է ասել, ինչպէս քաղաքականապէս համեմատաբար աղքատիկ և անուժ պիտի հանդիսանար երկրի այդպիսի դրութեան մէջ ռուս բուրժուազիան.—տնտեսական տեսակէտից նրան մատչելի շահագործման շրջանը ոչ միայն չէր անցնում երկրի սահմաններից, այլ և երկրի ներսում նա բաւական կրճատւում էր օտարերկրեայ կապիտալների գործակցութիւնից. քաղաքական տեսակէտից նա նոյնպէս կրկնակի կորուստ ունէր.—մի կողմից նրանում քիչ էր կուտակւում առևտրական և դրամական կապիտալ, այսինքն կապիտալի այնպիսի ձևեր, որոնց քաղաքական ազդեցութիւնը իրեն համար հակակշիռ չի գտնում պրոլէտարիատի համապատասխան թւի մէջ և այդ պատճառով էլ ամենից շատ է նպաստում բուժուական պէտքերի ամրացման. միւս կողմից՝ շնորհիւ օտարերկրեայ արդիւնաբերական կապիտալների ներկայութեան, Ռուսաստանում թւով աճող արդիւնաբերական պրօլէտարիատի և բանւորական մասսաներում կուտակւող լեղափոխական տրամադրութեան մի մասը, իրեն համար հակակշիռ չէր գտնում ռուս բուրժուազիայի ձեռքում հարստութիւնների համապատասխան աճման մէջ, քանի որ այդ հարստութիւններն ընկնում էին արտասահմանեան կապիտալիստների ձեռքը։

Այսպէս է գործի ընդհանուր վիճակը։ Երկիրը արէն մտել է

կապիտալիստական յարաբերութիւնների փուլի մէջ, ինչպէս տնտեսական, նոյնպէս և քաղաքական շրջանում։ Տնտեսութեան բնական ձևը քանդուած է. ամբողջ տնտեսական կեանքը վերաշինուած է կապիտալիստական շահի հիմքերի վրա. բանւորական մասսաներին շահագործում են վարձու աշխատանքի միջոցով կամ հողային ճորտ դարձնելով. նոյն շահագործման նպատակին են ծառայում նաև վաշխառուական դրամական նպաստները, ինչպէս և այն, որ հացը էժան գնով հաւաքւում է ապագայում աւելի թանգ ծախելու դիտաւորութեամբ։ Պետութեան ամբողջ միջդասակարգային քաղաքականութիւնը ուղղուած է դէպի այն կողմը, որ նա պաշտպանում է հողային սեփականատէրերի տնտեսական շահերը և կապիտալիստների համար հեշտացնում է բանւորական մասսաները ճնշել։ Պետութիւնը ամբողջապէս մի գործիք է դարձել բանւորական մասսաները ճնշելու համար, բայց ոչ բուրժուա-դէմօկրատական կառավարութեան ազնւացրած, մեղմացրած ձևով, այլ բիւրոկրատական ինքնիշխանութեան պարզ և ցինիկ ձևով։ Բանւորական մասսաների կապիտալիստական շահագործման այս ձևը ոչ միայն չի դիմակաւորում կապիտալիստական յարաբերութիւնների էութիւնը, ունևորի իշխանութիւնը չունևորի վրա, այն, որ արտադրութեան միջոցների տէրերը իւրացնում են չվճարուած աշխատանքի արդիւնքները, այլ ընդհակառակը նրանց դրսևորում է իրենց ամենաշատ կոպիտ և կտրուկ գծերով։ Աւելի կուլտուրական երկրներում բանւոր մարդի վիճակը այնուամենայնիւ մինչև որոշ աստիճան զարդարւում է նրան էլ բաժին ընկնող կուլտուրական բարիքների մի քանի հատիկներով.—մի քիչ աւելի ազատ ժամեր, մի քիչ աւելի կեանքի մարդավայել կարգ ու կանոն, մի քիչ մասնակցութիւն քաղաքական իրաւունքներին, ահա թէ ինչու այդպիսի կուլտուրական երկրներում հնարաւոր է ոչ յեղափոխական գիտակից տարրերի յայտնուելը բանւորական միջավայրում։ Իսկ կապիտալիստական շահագործման կոպիտ և ցինիկ ձևերի դէպքում նրա իսկական բնութիւնը և ամբողջ բուրժուական հասարակական կազմակերպութեան իմաստը դրսևորւում է իր ամբողջ մերկութեամբ. նրանց կարող է բանւոր մարդը չընկատել միայն, երբ նա կատարելապէս անգիտակից է, երբ նա կատարելապէս կոյր է և ամբողջովին տգէտ։ Ոչ մի բուրժուական կիսամիջոցներ, ոչ մի լիբէրալ կօմպրօմիսներ այստեղ սօցիալական հարցը բանւորական մասսաների աչքում չեն քօղարկում և խամրեցնում, և այս հարցը նրանց առաջ հրապա-

րակ է գալիս կարիքի, ստորացման, հիւանդութիւնների և մահուան՝ իսկապէս որ սոսկալի արտայայտութիւններով։

Ահա թէ ինչու, իրերի այսպիսի վիճակում, բանւորական մասսաների մէջ ամեն մի լուսաւորիչ գաղափարի մուտքը ամենավճռական նշանակութիւն ունի, և սօցիալիստական պրօպագանդը անխուսափելիօրէն վառ-յեղափոխական գոյն է ստանում։ Ճիշտ է, այդպիսի պայմաններում բանւորական շարժման առաջին քայլերը շատ դժուարութիւնների են հանդիպում. ինչպէս արտաքին արգելքներից, նոյնպէս և կուլտուրայի ցածր մակերևոյթից, այդ պատճառով էլ նա սկզբներում զարգանում է շատ ծանր և դանդաղ, կենտրօնանալով գլխաւոր քաղաքային կենտրօններում, բայց վերջիվերջոյ այնուամենայնիւ ոչ մեծ կազմակերպուած խմբերի ձևով տարածւում է ամբողջ երկրում և մասսայական բնաւորութիւն է ընդունում։ Ռուս սօցիալիստական շաժման փորձը ծառայում է իբրև անհերքելի ապացոյց այն բանի, որ սակաւ արդիւնաբերական երկրում սօցիալիստական կուսակցութիւնը կարող է այնպիսի չափերի հասնել, որոնք նրան դարձնում են երկրում ղեկավարող քաղաքական կուսակցութիւն։ Այն դէպքում, միաժամանակ այն բանի հետ, երբ շարժումը դուրս է գալիս իր դաւադրական աստիճանից, կարևոր գործնական նշանակութիւն է ստանում դասակարգային կռուի որոշ գնելակերպը և մշակումը այսպէս կոչւած նւազագոյն ծրագրի։

Մենք արդէն տեսանք, որ սօցիալդէմօկրատական թէօրիայի հայեցակէտից սօցիալիստական կուսակցութեան նւազագոյն ծրագրի հարցը բոլոր երկրների համար միակերպ է լուծւում, մի ընդհանուր ֆօրմուլայի ձևով, որ սօցիալիստական շարժման զարգացումը կապում է կապիտալիստական արդիւնագործութեան զարգացման հետ։ Բայց մենք նոյնպէս տեսանք, որ այս կարծեցեալ ընդհանուր որոշումը, ըստ իր էութեան, սքօղում է երկրի եղած փաստական վիճակը, և ինքը կառուցւած է որոշ փաստական հողի վրա, այսինքն այն հողի վրա, որ ստեղծում է խոշոր կապիտալիստական արդիւնաբերութեան յաջող զարգացմամբ։ Եթէ այս որոշումը, որ սկզբունքով հեռացնում է արտադրութեան կապիտալիստական եղանակի յեղափոխական բեկումը շարժման նախապատրաստական ժամանակաշրջանում, չի կարելի բաւարար չափով թէօրիապէս հիմնաւորել անխախտելի ծրագրային պարտաւորութեան ձևով մինչև անգամ արդիւնաբերօրէն զարգացած երկրների վերաբերմամբ և այնպիսի բացառութիւններ է թոյլ տալիս, որ-

պիսին հանդիսանում էր Փարիզի Կոմունան, ապա ուրեմն հեշտ է հասկանալ, թէ այդ թէօրիան ինչ հակասութիւնների լաբիւրինթոսի մէջ է ընկնում այն դէպքում, երբ երկրում հէնց տնտեսական վիճակը վերին աստիճանի յեղափոխական է հանդիսանում։

Իսկապէս որ, հակառակ մարքսիստական դպրոցի սովորական կարծիքի, որի համեմատ դասակարգային հակասութիւնները սրրւում են կապիտալիստական արդիւնագործութեան զարգացման հետ միաժամանակ, իրականութիւնը ճիշտ հակառակն է ապացուցում։ Կապիտալիստական զարգացման հանդիպած դժուարութիւնների ժամանակ է, բուրժուական հասարակութեան այս փրկիչ խցանի վատ գործառնութեան ժամանակ է, որ ամենից շատ նկատելի կերպով խախտւում է տնտեսական հաւասարակշռութիւնը, որը ամեն մի կապիտալիստական հասարակութեան մէջ պահպանւում է միայն շուկայի անպայման մշտական ընդարձակմամբ։ Արդիւնաբերական ճգնաժամերի անխուսափելիութիւնը, որ յատուկ է կապիտալիզմին, և որը Մարքսը դրել է իր բուրժուական կազմի կործանման թէօրիայի հիմքում, իսկապէս որ հանդիսանում է նրա տնտեսական անկայունութեան պատճառ, բայց կապիտալիզմի անկայունութեան այս առարկայական պատճառը նշանաւոր չափով անդամալուծւում է, երբ կապիտալիստական արտադրութիւնը յաջողակ է զարգանում, երբ նրա առաջ լայն բացւում են համաշխարհային շուկայի դռները։ Այն ժամանակ բուրժուական հասարակութեան ձեռքում յայտնւում է նրա գլխաւոր տնտեսական աղբիւրը՝ աճող ազգային հարստութիւնը, որի օգնութեամբ նա որոշ աստիճան հարթում է և ուղղում իր տիրապետութեան չափազանց ցաւոտ արտայայտութիւնները, միևնոյն ժամանակ իր սեփական դիրքերն ամրացնելով։

Եւ ընդհակառակը, երբ որևէ երկրում կապիտալիզմը թոյլ է զարգացած, այն վիճակում երբ սա հանդիսանում է իբրև հարկատու ուրիշ արդիւնաբերական երկրների, կապիտալիստական շահագործման բոլոր խարազանները և կարիճները նրանում միանում են ազգային աղքատացման հետ։ Իբրև այդպիսի վիճակի մի կենդանի օրինակ է ծառայում մեզ Ռուսաստանը, որտեղ մինչևանգամ բուրժուական տնտեսական հաւասարակշռութիւնը վաղուց կորել է հէնց այն պատճառով, որ նրան կապիտալիստական երկիր դարձնելու բոլոր ջանքերն ապարդիւն անցան։ Համաշխարհային շուկան դուրս գալու ազատ ելք չունենալով, բոլոր այդ ջանքերը յանգում էին նրան, որ Ռուսաստանը պահպանում էին աւելի արդիւնաբերական երկրների մրցութիւնից և անհագին պետական ծախսեր

*էին արւում յօգուտ բուրժուազիայի, այսինքն որ ազգաբնակութիւնը կատարելապէս քանդւեց և ներքին շուկան կատարելապէս անզօրացաւ։ Այսպիսով մի կախարդւած շրջան է ստացւում, որի մէջ խեղդւում է այն անելանելի արդիւնաբերական ճգնաժամը, այն «անհեռացնելի քրօնիքական գերարտադրութիւնը», որոնց մասին Կաուցկին խօսում է իբրև այնպիսինների մասին, որոնք ընդնշմարում են «վերջին սահմանը, մինչև որտեղ կապիտալիստական ռէժիմը կարող է իր գոյութիւնը պահպանել»։*

*Այսպիսով, միայն հէնց օբեկտիւ տնտեսական վիճակը սակաւ զարգացած կապիտալիստական երկրներում հանդիսանում է աւելի անելանելի բուրժուազիայի համար, հետևաբար նաև աւելի շատ յեղափոխական, քան թէ կապիտալիստական արտադրութեան յաջող զարգացման հնաւորութեան դէպքում։ Բայց այդ վիճակն աւելի շատ յեղափոխական է հանդիսանում, երբ սօցիալիստական շարժումն էլ հրապարակի վրա կայ, եթէ մենք ուշք դարձնենք գործի քաղաքական կազմի վրա, հասարակական ուժերի յարաբերութեան վրա թոյլ զարգացած կապիտալիստական երկրում։*

*Իսկապէս որ, եթէ մինչևանգամ արդիւնաբերօրէն զարգացած երկրներում, նրանց ունեցած կուլտուրայով և բուրժուական տիրապետութեան ազնուացած ձևերով, բանւորական շարժումը զսպւում է կապիտալիստական կազմի շրջանակներում միայն այն դիմադրութեան զօրութեամբ, որին նա հանդիպում է զօրաւոր բուրժուազիայի կողմից, ապա ուրեմն հեշտ է հասկանալ, թէ ինչ լարւած բնաւորութիւն է ստանում դասակարգային կռիւը, երբ նա միանգամ արդէն փաստօրէն բռնկել է մի երկրում, որի ամբողջ տնտեսական կեանքը կառուցւած է ներքին կողոպուտի և երկրագործ ազգաբնակչութեան յառաջադիմող քայքայման վրա։ Գաղափարական բնաւորութիւն ունեցող մօտիվներին, արթնացած մարդկային արժանապատւութեան իլլիւզիաներին այստեղ միանում են յուսահատութեան մօտիվները, մարդկանց տարրական ձգտումները, որոնք իրենց կեանքը և իրենց մերձաւորների կեանքն են փրկում։*

*Եւ միևնոյն ժամանակ, ինչպէս վերևում արդէն մատնանիշ արինք, այն դիմադրութեան ուժը, որին հանդիպում է բանւորական շարժումը այդպիսի թոյլ արդիւնաբերական երկրներում համեմատաբար աւելի փոքր է, քան զարգացած կապիտալիզմի երկրներում. նա փոքր է ոչ միայն տնտեսական զարգացման մակերևոյթի համեմատ, այլ և շատ աւելի մեծ պրօպօրցիայով. եթէ, օրինակ, ասենք թէ ռուս արդիւնագործութեան մակերևոյթը չորս-*

անգամ ցածր է անգլիականից, ապա ուրեմն ռուս բուրժուազիայի հասարակական ուժը ոչ թէ չորս անգամ պակաս է անգլիական բուրժուազիայի հասարակական ուժից իր բանւոր դասակարգի վերաբերմամբ, այլ շատ աւելի մեծ պրոպորցիայով, որովհետև անգլիական բուժուազիան յենւում է ոչ միայն իր բանւորական դասակարգի շահագործման վրա, այլ նաև ուրիշ երկրների բանւորական դասակարգի, այնինչ ռուս բուրժուազիան իր ձեռքերում չի կարողանում պահել ռուս բանւորական մասսաների արդիւնաբերական, առևտրական և դրամական շահագործման նոյնիսկ բոլոր արդիւնքները։

Ռուս բուրժուազիայի հէնց այս սօցիալական անզօրութիւնը, որը պայմանաւորւած է Ռուսաստանում խոշոր կապիտալիստական արտադրութեան թոյլ զարգացմամբ և այստեղից բղխող՝ ռուսական բուրժուական կապիտալների համեմատաբար աղքատիկ չափերով, սա է որ արտայայտւում է մեր երկրի կատարեալ տնտեսական և ֆինանսական աւերման մէջ, այն բանում, որ մեր բուժուազիան կատարելապէս անզօր է իր ձեռքը վերցնել պետութեան տնտեսական քաղաքականութիւնը, բուրժուական հասարակական կեանքի կայուն ձևեր ստեղծել, հնարաւոր դարձնել ։որևէ կոմպրոմիսներ դասակարգային հողի վրա, նման այն կոմպրոմիսների, որ արևմտաեւրոպական բուրժուազիան ընդունակ էր առաջարկելու բանւոր դասակարգին։

Եթէ մինչևանգամ ռուս բանւորական դասակարգը կամենար իր շարժումը ոչ յեղափոխական—սօցիալական հողի վրա դնել և նրան մտցնել կապիտալիստական կարգի շրջանակների մէջ, ապա ուրեմն այդպիսի ծրագիրը Ռուսաստանում տնտեսապէս անիրագործելի կը լինէր, որովհետև այդպիսի ծրագիրը տնտեսապէս հնարաւոր է միայն երկրի յաջողակ կապիտալիստական զարգացման հողի վրա։ Ռուս բուրժուազիան անընդունակ կըլինէր ռուս բանւորական դասակարգին առաջարկել այն աւելի կամ պակաս հնարաւոր գոյութեան պայմանները, որը կարող էր իր բանւորական դասակարգին առաջարկել արդիւնաբերօրէն զարգացած երկրների բուրժուազիան, որ դէպի քաղաքներն է քաշել 60°/o մինչև 80°/° բանւորական ազգաբնակութեան և այնտեղ աւելի շատ կազմակերպած պրոլէտարիատի բաւական նշանաւոր մասսաները բարձրացրել է բանւորական գոյութեան համեմատաբար բարձր աստիճանը։

Արևմտա-եւրոպական բուրժուազիայի սօցիալական ուժը գլխաւորաբար հէնց նրանումն էր, որ նա՝ շնորհիւ իր ձեռքում աճող

հարստութիւնների, ընդունակ եղաւ դէպի իրեն շատ կողմնակիցներ գրաւելու և, միւս կողմից, փաստօրէն հնարաւոր դարձնելու, որ բանւոր դասակարգը ձգտի իր տնտեսական վիճակի բարելաւման բուրժուական կազմի շրջանակներում, առաջադրի դասակարգային կռւի ոչ յեղափոխական նւազագոյն ծրագիր։ Բայց այս բանը նրա համար հնարաւոր էր միայն այն պատճառով, որ նա յենւում էր կապիտալիստական զարգացման համեմատաբար արագ աճման վրա, իսկ սկզբում նոյնպէս յենւում էր բանւորական մասսաների դասակարգային գիտակցութեան սակաւ զարգացման վրա։ Անգլիական կամ գերմանական բանւորական մասսաներն անշուշտ մեծ դժբաղդութիւններ և տառապանքներ են կրել անգլիական կամ գերմանական կապիտալիստական զարգացման սկզբնական աստիճաններում, բայց նրանք այն ժամանակ դեռ կարողութիւն չունէին բուրժուական պետութեանը լուրջ դիմադրութիւն ցոյց տալու, ապա երբ այդ երկրներում բանւորական շարժումն ընդունեց առաւել կամ պակաս պատկառելի չափեր, արդէն բուրժուազիան կարող էր նրան հնարաւորութիւն տալ դասակարգային կռիւ մղելու իր տնտեսական վիճակի անմիջական բարեկարգութեան համար։ Այսպիսով, եթէ կապիտալիստական զարգացումը իր կողմից նպաստում էր բանւորական շարժման աճմանը, բայց մինչև այժմ ոչ մի տեղ դեռ այնպիսի օրինակ չէ եղել, որ սօցիալական բանւորական շարժումը իր զարգացմամբ նպաստէր կապիտալիզմին, որ վերջինս յաջողակ կերպով անցկացնէ աւելի արդիւնաբերական երկրների հետ մշակած իր գոյութեան կռւի ճգնաժամի շրջանը, և որ նա այդ նպատակով իր բուրժուազիային առաջարկի, որ պատրաստ է տասը կամ քսան տարւայ քաղցի և տառապանքի։ Երբ որ բուրժուական հասարակութիւնը չի կարողանում զարգացող բանւորական շարժմանը հակադրել ազգային հարստութեան կուտակւած ուժը, այն ժամանակ դասակարգային կռիւը բուրժուազիայի և բանւորական դասակարգի միջև պիտի անխուսափելիօրէն յեղափոխական բնաւորութիւն ընդունի։

***

Այսպէս են, խոշոր գծերով, գիտական սօցիալիզմի սօցիալ-յեղափոխական դպրոցի նւազագոյն ծրագրի թէօրիական հիմքերը։

Այս նւազագոյն ծրագրի գլխաւոր որոշիչ գիծն այն է, որ նա սօցիալ-յեղափոխական բնաւորութիւն ունեցող նւազագոյն պահանջները չի բացառում։

Սկզբունքով. սօցիալ-յեղափոխականների կուսակցութիւնը ոչ մի գիտական հիմք չի նկատում, որ պաշտպանի այն պահանջները, թէ կապիտալիստական զարգացումը անխախտելի պիտի լինի մինչեւանգամ այն արդիւնաբերական երկրներում, որոնք կապիտալիզմի բարձր մակերևոյթի վրա են կանգնած. Այնտեղ էլ այդ հարցը պիտի վճռուի ոչ թէ թէօրիայով, այլ գործնականով։

Իսկ ինչ վերաբերում է արդիւնաբերօրէն քիչ զարգացած երկրներին, ինչպէս օրինակ Ռուսաստանը, որտեղ ինքը տնտեսական վիճակը յեղափոխական հողի վրա է դնում բանւորական մասսաների դասակարգային կռիւը բուրժուազիայի հետ, ապա այդպիսի երկրներում սօցիալիստական կուսակցութեան նւազագոյն ծրագիրը բուրժուա-դէմօկրատական սկզբունքների վրա թէօրիապէս կառուցիլը, մերժելով սօցիալ-յեղափոխական պահանջները, հանդիսանում է ուղղակի հակասութիւն իրականութեան պայմաններին և փաստօրէն անիրագործելի ուտօպիզմ։ Դա ուղղափառ մարքսիզմի ուտօպիան է։



